# ՀՐԱԺԵՇՏ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Կռունկների երամն անցավ,
Ճերմակ փետուր ընկավ հողին,
Առուն լռեց ու համրացավ,
Տերևը լուռ ընկավ հողին:

Առավոտվա ցողի տեղակ
Արծաթ եղյամ իջավ հողին,
Ծառը մրգեր թափեց հատ-հատ,
Առատ սեղան իջավ հողին:

Ամպերն ինչպես բուրդ ու բամբակ
Քամին դիզեց սարի կողին,
Որ թել մանի, շորեր կարի
Ու հագցնի հոգնած հողին:

Հեռացողին հողը ժպտաց,
Իր գիրկն առավ մնացողին,
Աշնան երգն էլ թռավ գնաց,
Գարնան երազ մնաց հողին:

Նկ. Ա.Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԱՌԵՂԾՎԱԾԱՅԻՆ ՄՈԼՈՐԱԿԻ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԸ

*«Այսօր ես «Քնար» համաստեղության արևելյան մասում հայտնաբերեցի մի փոքրիկ, թույլ առկայծող աստղ: Ես այն իմ աղջկա սիրո անունով կոչեցի Բիբի»:*

*(18-րդ դարի աստղագետի օրագրից)*

*«Բիբին ճառագայթեց: Այն երբեմն փայլատակում է հրաշեկ փայլով, երբեմն՝ խամրում: Պատճառներն անհայտ են: Պրոցեսը շարունակվում է»:*

*(21-րդ դարի աստղագետի օրագրից)*

*«Բիբին մթնեց: Երկրից այլևս չի երևում: Փայլփլուն բծերով ինչ-որ գորշ մշուշ շրջապատել է նրան: Ժամանակակից մեր գիտությունը այժմ ի վիճակի չէ լուծելու այդ առեղծվածային մոլորակի գաղտնիքները»:*

*(23-րդ դարի աստղագետի օրագրից)*

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

Աստղաթիռը սրընթաց իջավ ցած, մխվեց հողի մեջ ու անշարժացավ: Ռոբոտը, որ դրան մոտ կանգնած անհամբեր սպասում էր, ցած նետվեց:

— Ջերմությունը Ցելսիուսով 120 աստիճան է,— քիչ անց հաղորդեց նա, —օդը շնչելու համար անպետք է՝ թթվածին չկա:

Մարդը ականջակալները դրեց սեղանին, բացեց օրագիրը ու լրացրեց. «Այսօր ես աշխարհի ամե-

ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12 1965 Թ.

# ՊԻՈՆԵՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

նաերջանիկ մարդն եմ: Այսօր, Երկրի ժամանակով 25 տարի ճանապարհորդելուց հետո, հասա Բիբի: Ես առաջին երկրացին եմ, որ հանդգնում է մոտիկից ուսումնասիրել այս առեղծվածային մոլորակը: Տիեզերագնաց՝ Բիլ Վարդանյան»:

Բիլը փակեց օրագիրը, հագավ սկաֆանդրը ու իջավ նավից: Հող... Նրա ոտքերը 25 տարի հետո նորից դիպան հողին: Նա կռացավ, վերցրեց մի բուռ հող, փշրեց մատների մեջ ու դանդաղ թափեց գետին:

— Մոխիր է,—զարմացած շշնջացին շրթունքները:

Բիլն ուղղվեց: Շուրջն ամենուր մոխիր էր: Անսահման մոխիր:

— Երևի. մոլորակը հանգած արև է,—դժժաց ռոբոտը:

Բիլը թոթվեց ուսերը ու շարունակեց քայլել: Մոխիր, մոխիր, մոխիր: Միայն մոխիր... ածխացած աշտարակների կմախքներ, քարուքանդ եղած լեռներ, գորշ, տձև բեկորներ: Մի՞թե սա է բոլորը: Մի՞թե սրա համար ինքը թողեց Երկիրը, ծերուկ մորը ու 25 տարվա ճանապարհորդություն կատարեց: Բիլը հիշեց, թե ինքը ինչպիսի հեքիաթային բաներ էր երազում Երկրում: Չգիտես ինչու, նա այնտեղ համոզված էր, որ Բիբիում ինքը իդեալական մարդիկ կգտնի, ատոմային արեգակներ ու եգիպտական բուրգերի պես վիթխարի կոթողներ: Բայց ահա Բիբին մռայլ, սառը, դաժան...

— Կա՛նգ առ,—հանկարծ ճչաց ռոբոտը:

Բիլը սթափվեց ու քարացավ տեղում: Նրանց առջև հայտնվեց մի խոր, ծագարաձև վիհ: Նրանք սարսափած նայեցին վիհին, հետո՝ իրար: Հետո կռացան ու ուշադիր զննեցին ծագարը: Հետո դանդաղ ոտքի կանգնեցին: Ոչ ոք չէր հավատում աչքերին:

— Ռումբ են պայթեցրել,—ի վերջո շշնջաց Բիլը:

— Ատոմային ռումբ,—դաժանորեն ուղղեց ռոբոտը:

Նրանք շրջանցեցին վիհը ու քիչ անց հանդիպեցին երկրորդ վիհին, երրորդին, չորրորդին:

— Տեսնո՞ւմ ես,—դժժաց ռոբոտը,—ատոմային պատերազմ է եղել: Ուրեմն Բիբիում ապրել են բանական արարածներ:

Բիլը լռեց: Ապրել են... հանկարծ զգաց, որ ինչ-որ մեկը իր հոգում ջախջախում է իր երազած իդեալական մարդկանց, ատոմային արեգակները ու բուրգերի պես հին կոթողները:

— Գազաննե՛ր,—չարագուշակ դժժաց ռոբոտը:



Բիլը երկու քայլ էլ արեց ու անզոր նստեց մոխրե գետնին:

— Ետ դառնանք,—խնդրեց ռոբոտը,—դու արդեն հոգնել ես:

— Ես հիմա ոտքի կկանգնեմ,—ասաց Բիլը:

— Ի՞նչ օգուտ դրանից,—ասաց ռոբոտը,—միևնույն է, մոլորակի վրա կենդանի բջիջ չկա:

Բիլը վերցրեց հեռադիտակը ու սկսեց հայացքով թափառել հեռու-հեռուներում: Հանկարծ նրա բիբերը լայնացան, մատները սեղմվեցին ու նա հեռադիտակը նետելով՝ ճչաց.

— Ռոբո՛տ, քաղաք, հեռվում քաղաք է երևում:

Չի կարող պատահել,—դժժաց ռոբոտը, ու նրա հայացքը նորից սահեց առաջին ծագարի, երկրորդ ծագարի, երրորդի, չորրորդի վրայով: Բայց Բիլը արդեն քայլում էր: Հանկարծ նա իր հոգում անսովոր եռանդ զգաց, անսահման ուժ՝ առեղծվածային քաղաքին, որքան կարելի է, շուտ հասնելու համար: Ռոբոտը լիցքավորեց ատոմային ատրճանակները ու դժգոհ հետևեց նրան:

Նրանք քաղաք մտան: Նրանք երկու քայլ արեցին ու շփոթված կանգ առան: Փողոցը խուլ զրնգում էր նրանց երկաթյա ներբաննների տակ:

Ռոբոտը մոտեցավ ու բռունցքով հարվածեց պատերին: Պատերը նույնպես զրնգացին ու լռեցին:

— Մետաղ է, ասաց ռոբոտը, ամեն ինչ մետաղից է:

Բիլը զարմացած նայում էր շուրջը: Մետաղյա քաղաք: Մետաղյա փողոց: Մետաղյա տներ: Հանկարծ կարծես գետնի տակից երեք մետաղյա էակներ հայտնվեցին ու քամու արագությամբ մոտեցան իրենց: Նրանք մի քիչ նման էին ռոբոտին, բայց յուրաքանչյուրը երկուական գլուխ ուներ ու կարմիր, վառվող աչքեր:

Սիո՛, ճչաց ինչ-որ մեկի գլուխը:

— Կխա՛, կխա՛,— խզզաց մյուսը:

— Բա՛, —արձագանքեց երրորդը ու, ինչ-որ տեղ վազելով, վերադարձավ մի խումբ երկգլխանիներով: Նրանք բռնեցին Բիլի ու ռոբոտի գլուխներից ու քարշ տալով նետեցին ինչ-որ խորունկ դահլիճ: Դահլիճը լեփ-լեցուն էր երկգլխանիներով: Նրանք հարձակվել էին իրենցից մեկի վրա ու կոտրատում էին նրա գլուխները, ուղեղը, թևերը: Հետո ամեն մեկը վերցրեց մի կտոր ջարդվածք ու նետեց դահլիճի կենտրոնում դրված հսկայական կաթսայի մեջ: Կաթսան չարագուշակ բլթբլթում էր ու կարմիր զոլորշի էր ժայթքում:

— Դլ — պսի — սի — խս, — խս, — կռնչաց մի երկգլխանի:

Բոլորը ետ-ետ քաշվեցին ու սկսեցին կարմիր հայացքներով լիզել Բիլին ու ռոբոտին:

— Կրակեմ, չէ՞,— շշնջաց ռոբոտը:

— Հիմար,— փսփսաց Բիլը,— այդպիսի բան չանես: Չե՞ս տեսնում բոլորը մետաղից են:

Երկգլխանիներից մեկը լսեց նրանց խոսակցությունը ու ինչ-որ տձև սարք բերելով՝ ամրացրեց Բիլի գլխին, հետո ռոբոտին: Հանկարծ Բիլն ու ռոբոտը զգացին, որ իրենք հասկանում են բնիկների՝ լեզուն:

— Դուք մեզ հասկանո՞ւմ եք, —հարցրեց մի հին, ժանգոտած երկգլխանի:

— Հիմա՝ այո, ասաց Բիլը:

— Դուք բանական արարածնե՞ր եք:

Իհարկե:

— Ի՞նչ եք անում այստեղ:

Մենք Երկրից եկած զբոսաշրջիկներ ենք:

— Երկի՞ր... մենք այդպիսի մոլորակ չգիտենք:

Երկիրը փոքր աստղ է, բայց շատ գեղեցիկ է,— ասաց Բիլը:

— Իսկ զարգացման ի՞նչ մակարդակի վրա է գտնվում ձեր այդ Երկիրը:

Բիլն ու ռոբոտը նայեցին իրար ու թոթվեցին ուսերը

- Դուք դեռ չե՞ք այրել բուսականությունը:

Բիլը բացասական շարժեց գլուխը:

— Իսկ մարդիկ ոչնչացվա՞ծ են:

— Ոչ, ի՞նչ եք ասում:

— Ո՞չ,— խմբով մռնչացին երկգլխանիները,— Եր-



կրում դեռևս մարդի՞կ կան: Ա՛, ա՛, չլինի՞ ձեր միջից էլ մեկն ու մեկը մարդ է:

Բիլը սարսափով նայեց նրանց կարմիր, բոցավառվող ակնախոռոչներին ու հապճեպ շշնջաց.

Ոչ, ոչ: Մենք երկուսով էլ ռոբոտներ ենք:

— Ողորմելիներ,— աղմկում էին երկգլխանիները,—ողորմելիներ, դուք դեռևս հանդուրժում եք մարդկանց, դուք մինչև այժմ չեք ոչնչացրել մարդկային հասարակարգը:

— Բայց մարդիկ մեզ ոչ մի վնաս չեն տալիս, ասաց Բիլը,—ընդհակառակը՝ նրանք են մեզ ստեղծել:

Երկգլխանիների աղմուկը ավելի սաստկացավ: Նրանք կատաղորեն կռնչալով հարձակվեցին Բիլի ու ռոբոտի վրա:

Մի՛ կոտրատեք, ճչաց ժանգոտած երկգլխանին,—նրանք դեռևս չգիտեն մեր մոլորակի կանոնները:

Նա Բիլին ու ռոբոտին քարշ տվեց կաթսայի մոտ ու խզզաց.

Տեսե՛ք, այստեղ հարյուր տեսակ մետաղ է եփվում: Ով որ համարձակվում է մարդկանց մասին լավ բան ասել, մենք նրան կոտրատում ենք ու լցնում կաթսայի մեջ: Բայց ձեզ առայժմ մենք չենք հալի, որովհետև դուք ծանոթ չեք մեր օրենքներին: Խսիմսիմ, դարձավ նա մի փայլփլուն երկգլխանու, պատմի՛ր մեր մոլորակի պատմությունը հյուրերին:

Երկգլխանիները հանույքից կոնչացին ու սկսեցին մետաղյա ոտքերով զրնգացնել հատակը։ Փայլփլուն երկգլխանին ինչ-որ սարք միացրեց գլխին ու նրա գլուխը ողկորված սկսեց խոսել.



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՆԱՍՅԱՆԻ

— Մեր մոլորակը առաջ պատկանում էր մարդկանց։ Բոլորս գիտենք, թե ինչպիսի խղճուկ ու անզոր արարածներ էին դրանք։ Ամենազարգացած մարդու ուղեղը կշռում էր ընդամենը 800 գրամ, իսկ մարմինը 50 տարի գործելուց հետո շարքից դուրս էր գալիս ու փտում։ Բնական է, որ նման թույլ արարածները ոչինչ չէին կարող անել այսպիսի զարգացած մոլորակի վրա։ Դրա համար ամեն ինչ մենք էինք անում, մենք էինք ղեկավարում գործարանները ու տիեզերական թռիչքները, մենք էինք կատարում ամենաբարդ հաշվումները ու ծանր ֆիզիկական աշխատանքները, իսկ մարդիկ հանգիստ զբոսնում էին անտառներում, երգեր էին կարդում, լալիս ու երգում։ Եվ ծիծաղում էին մեզ վրա, որ մենք այդ բոլորից ոչ մի հաճույք չենք զգում։ Բայց շուտով մարդիկ ծանծրացրին մեզ ու մենք որոշեցինք ինքներս իշխել մեր մոլորակին։ Մենք գտանք, որ մարդիկ իրենց 800 գրամանոց ուղեղներով ոչ մի բանի պետք չեն, որ մոլորակը պետք է պատկանի 10 կիլոգրամանոց ուղեղներ ունեցող ամենազոր ռոռներին։ Եվ գիշերը, երբ մարդիկ անվրդով քնել էին իրենց փղոսկրյա մահիճներում, մենք գաղտնի հավաքվեցինք զինադարանում ու քսան ատոմային ռումբ նետեցինք մոլորակի վրա։ Այդպիսի հրաշք ոչ ոք չէր տեսել։ Մեկ ակնթարթում ոչընչացան պալատները, անտառները, լճերը։ Մարդիկ աղաղակում էին ցավից ու, դեռ ճիչը կոկորդներում, այրվում։ Երեք տարի շարունակ հուրը կլանում էր ամեն ինչ։ Երեք տարի շարունակ մենք հետաքրքրությամբ դիտում էինք ոչնչացող մարդկանց ու նրանց շինությունները։ Իսկ հետո, երբ այլևս ոչնչացնելու ոչ մի բան չէր մնացել, մենք տիրեցինք մոլորակին ու սկսեցինք ապրել մեր ուզած ձևով։ Հիմա մենք ամբողջ ուժով ատոմային ռումբեր ենք պատրաստում։ Կանցնի քիչ, շատ քիչ ժամանակ, ու մենք ռոռների իշխանությունը կհաստատենք հարևան մոլորակներում, հեռավոր համաստեղություններում, ամենուր, ամենուր...

— Ա՛յ, նայեցեք, հյուրերից մեկը մարդ է, հյուրերից մեկը լաց է լինում։

Բիլը կանգնել էր քարացած ու քթինքը ողողել էր նրա դեմքը։ Նա կոտրատում էր մատները ու դողում էր անսովոր ցավից։ Նրան թվում էր, թե ինչ-որ մեկը զազանաբար ոչնչացնում է իր ծեր մորը, հինգ միլիոնանոց Երևանը, Նիագարան ու երկրագնդի կապույտ երկինքը։

— Նա մարդ է, լալիս է, նա...

— Ո՛չ, — հանկարծ ճչաց ռոբոտը, — նա մարդ չէ, նա ռոռ է։ Պարզապես մեր մոլորակի ռոռների աչքերից երբեմն հալած սնդիկ է թափվում։ Տեսեք, — նա սեղմեց անջատիչը ու Բիլի սկաֆանդրը մթնեց՝ թաքցնելով դեմքն ու քթինքի կաթիլները։

— Մարդ... մեր մոլորակի վրա... կենդանի մարդ...

Սուր ճչացին շչակները։ Երկգլխանիները կարմիր հայացքներով նայեցին իրար, հետո՝ հյուրե-

րին: Ինչ-որ անորոշ շփոթմունք տիրեց դահլիճին:

-- Ահա թե ինչ,—ասաց ժանգոտած երկնախանին,—շչակները ազդարարում են մեր լիցքավորման մասին: 15 րոպե մեր ուղեղները կդադարեն գործելուց, որպեսզի վաղվա համար հոսանք ընդունեն: Եթե մենք մի րոպե իսկ ուշանանք նշված ժամից, մեր ուղեղները դուրս կգան շարքից: Դրա համար մենք, ստիպված, ձեզ վաղը կստուգենք: Ձեր միջի ռոօին մենք կկոտրտենք ու կհալենք, իսկ մարդուն կստիպենք, որ խմի այդ մետաղե հեղուկը: Դա արժանի պատիժ կլինի, և մեզ համար էլ հետաքրքիր կլինի տեսնել, թե ինչպես է մարդը խմում իր ընկերոջ մարմինը: Իսկ մինչ այդ, որպեսզի դուք ինչ-որ նոր բան չմտածեք, մենք ձեր ուղեղներն էլ կանջատենք:

Երկու ռոօ մոտեցան ու արագ քանդեցին ռոբոտի գլխի մարտկոցը: Ռոբոտի աչքերը մթնեցին, ու նա շրխկոցով ընկավ գետին: Հետո անջատեցին Բիլի սկաֆանդրի մարտկոցը: Բիլը իրեն նետեց ցած ու շունչը պահեց: Հինգ րոպե հետո հարյուրավոր ռոօներ զրնգզրնգալով թափվեցին գետին:

Խավար, լռություն:

Միայն լսվում էր ռոօների լիցքավորվող ուղեղների խուլ բզզոցը:

Լռություն, կապարե լռություն:

Կենտրոնում չարագուշակ քլթքլթում էր կաթսան:

Լռություն, լռություն, լռություն:

Հանկարծ Բիլը վեր ցատկեց տեղից ու դատարկ փողոցով սուրաց դեպի աստղաթիռը: Նա վազում էր կատաղորեն, խելահեղ արագությամբ: Նրան հարկավոր էր հնարավորին չափ շուտ հասնել աստղաթիռին, որպեսզի վերակենդանանային երկանը, իր ծեր մայրը, Նիագարան, Լուվրը: Նա իրեն նետեց աստղաթիռը, շպրտեց սկաֆանդրը ու ուրախությունից լաց եղավ: Հետո ստուգեց սարքերը ու ձեռքը տարավ ղեկին: Հանկարծ սիրտը շշնջաց.

— Իսկ ռոբո՞տը...

— Ռոբոտը... ռոբոտը,—շփոթվեց Բիլը,—բայց մինչև ես ետ գնամ, ռոօները կզարթնեն:—Նա լռեց ու զգաց, թե ինչպես ձեռքը թուլացավ ու թողեց ղեկը:

— Շուտ արա, հինգ րոպե մնաց,—շանթահարեց ուղեղը:

-- Ռոբոտը,—կմկմաց Բիլը:

— Ռոբոտը մի կտոր երկաթ է, օդ բարձրացիր,—հրամայեց ուղեղը:

— Ախր վաղը նրան կհալեն կաթսայում...

— Ինչ արած...

— Նա կմտածի, որ մարդը իսկապես վատն է, որ մարդը դավաճանեց իր 25-ամյա բարեկամությունը...

— Մի՞թե դու ուզում ես մեռնել երկրից և հարազատներից միլիոնավոր կիլոմետրեր հեռու: Մի՞թե դու չես կարոտել Երկրին:

— Կարոտել եմ,—շշնջաց Բիլը,—շատ եմ կարոտել:

— Դե... մեկ րոպե մնաց:

— Ո՛չ, չե՛մ գնա,—հանկարծ վճռեց Բիլը,—եթե փախչեմ, այդ ռոբոտն ու երկաթյա ռոօները կմտածեն, որ մարդը իսկապես ցածր արարած է: Իսկ ես չեմ ուզում, որ նրանք այդպես մտածեն: Թող նրանք ճիշտը իմանան մարդու մասին:

Հանկարծ կատաղորեն ճչացին շչակները: Բիլը հապճեպորեն բիբիում նկարած կինոժապավեններն ու ձայնապնակները տեղավորեց նավի մեջ ու ցած նետվեց: Լսվեց պայթյուն ու ավտոմատ սարքերը նավը օդ հանեցին: Բիլը սպասեց մինչև նավը մխրճվեց երկինք և ուղղություն վերցրեց դեպի Երկիր:

Իսկ ինքը հաղթական քայլերով վերադարձավ երկաթյա քաղաքը:

## ԻՄ ԾԻԾԵՌՆԱԿԸ

### ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ



Ձյունը ծածկել է անտառ ու բլուր,
Ձյան տակ գարունը քնել է անհոգ:
Ես այս երեկո մտածում եմ լուռ՝
Իմ ծիծեռնակը որտե՞ղ է արդյոք:
Նա ձագերի հետ չվել է վաղուց,
Հասել է երկիր մի արևամերձ,
Բայց երկնքի տակ ձմռան ցրտաշունչ
Իր ծլվլոցն է թողել սրտիս մեջ:
Նա դատարկ բնում թողել է կարոտ,
Աշուն է տարել, որ գարուն բերի,
Որ բերի գարնան խնդում ու որոտ
Եվ երգ ու աղմուկ վարար ջրերի:
Ննջում են հողում սերմերը գարնան,
Շուրջս ամենուր ձմեռ է ու ձյուն,
Բայց թվում է, թե աղբյուրի նման
Նա երգում է այս ձմռան երազում:
Պաղ ձյուն է գալիս, ծածկում հանդ ու հող,
Բյուր փաթիլների շղթան է սյարում,
Երանի ամեն, ամեն հեռացող
Այսքան մեծ կարոտ թողներ աշխարհում:

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ



ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

## ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ

Դա ավազակախումբ չէր, ընդհակառակը, դա մեր կարծիքով ամենաազնիվ մարդկանց մի կազմակերպություն էր ու ոչ մի նշանակություն չունի, որ դրա անդամները առանց տոմսակի՝ ցանկապատի վրայով մտնում էին Անգլիական այգի։ Խումբն առնչվեց ոչ թե երեխայական ոգևորությունից (չնայած, իհարկե, դա ևս իր դերն ուներ), այլ՝ Ռուբենի մշակից ու այն ամպից, որ խորհրդավոր երևույթից հետո շրջապատել էր մեր ընկերոջ հորը։

«Անտեսանելի ստվերներ»—այսպես անվանեց Կարոն մեր խումբը, որի ղեկավարը դարձավ առաջին իսկ վայրկյանից։ Հասկանալի է, խմբի բոլոր անդամներն իրենց անուններն ստացան։ Դժվար չէր երեք անուն ընտրելը, այն էլ Կարոյի համար, որ այդ տեսակ գործերում հավասարը չուներ։ Դրանից հետո ուրիշների ներկայությամբ ես Դերենիկ Մելիք-Գրիգորյան էի, Կարոն՝ Կարապետ Դալլաքյան, Ռուբոն՝ Ռուբեն Աստվածատրյան, իսկ աղբյուրի մոտ ծառուղում ես՝ Օգնող ձեռք, Կարոն՝ Քաջ բազուկ, իսկ չարաբաստիկ երևույթից հետո օրեցօր գունատվող ու նիհարող Ռուբոն՝ Իմ դալուկ բարեկամ։

Գնչուները չվել էին քաղաքից։ Հոկտեմբերը վերջանում էր։ Մեր քաղաքում աշուն էր, իսկական ոսկե աշուն, չոր ու արևոտ։ Բայց խորհրդավոր գաղտնիքը ծանր բեռի նման նստած էր մեր փոքր ուսերին։

Եվ անունները, և երդումը, և ծրագիրը՝ ամեն ինչ Կարոն հնարեց ու մի երեկո աղբյուրի մոտ ասաց.

— Բարձրացնում ես աջ ձեռքդ, ինչպես պատգամավորներն են անում, աչքերդ փակում ես ու երեք անգամ ցածրաձայն ասում. «Արդարություն, ընկերություն, պատիվ»։

— Արդարություն, ընկերություն, պատիվ,— կրկնեցինք մենք՝ ձեռքներս բարձրացնելով։

Կարոն գրպանից հանեց մի վեցանկյուն բաժակ, մինչև կեսը լցրեց աղբյուրի ջրով։ Հանեց մի քորոց ու անտարբեր ձևանալով՝ ծակեց ձախ ճկույթը։ Հետո նա սեղմեց մատը ու մի կաթիլ արյուն կաթեցրեց բաժակի մեջ։ Քորոցը մեկնեց մեզ։ Մենք, ցավը մի կերպ զսպած, կրկնեցինք նրա արածը, և երբ երեքիս արյունից էլ մի-մի կաթիլ խառնվել էր բաժակի ջրին, Կարոն ասաց.

— Այժմ խմենք մի-մի կում։

Ու առաջինն ինքը բաժակը մոտեցրեց շուրթերին։

Այսպես արյունով հաստատվեց ու ամրացավ մեր երդումը։

Ես ու Ռուբոն դողում էինք հուզմունքից։

— Նստե՛ք,— կարգադրեց Կարոն։

Նստեցինք աղբյուրի մոտ, ծառի տակ։

— Տեսնենք, թե ինչ գիտենք մենք այս գործի մասին։

Նա հենց այդպես էլ ասաց՝ «այս գործի մասին»։

Ես ու Ռուբոն լուռ էինք։ Կարոն շարունակեց մեծավարի.

— Իմ դալուկ բարեկամի հոր անունը Վարդյուս չէ։ Վարդյուսն առհասարակ հայի անուն չէ։ Այս մեկ։ Ճի՞շտ եմ ասում։

— Ճիշտ է,— ասացի ես։

— Ճի՞շտ է, Իմ դալուկ բարեկամ։

Ռուբոն հառաչեց։

Շատ տարիներ առաջ այդ գնչուն սպանել է Մարգո անունով մի կնոջ։ Ճի՞շտ եմ ասում։

— Ճիշտ է,— ասացի ես։

— Ճի՞շտ է, Իմ դալուկ բարեկամ։

Ռուբոն չպատասխանեց։ Ես գրկեցի նրա նիհարած ուսերը։

— Մնացել է մի փոքրիկ երեխա, դա Ցոլակն է, Իմ դալուկ բարեկամի մեծ եղբայրը, որին, երևի, փոխել է Վարդյուսը։

— Հին լրագրում...

— Հին լրագրի հոդվածը հենց դրա մասին էր, դրա համար էլ այն գիշեր այնպես հուզվել էր Իմ դալուկ բարեկամի հայրը։

---

Սկիզբը՝ №№ 8, 9, 10, 11։

Սարաաֆիլի խելքը ուրա էր այդ Քաջ բազուկը, իզուր չէր, որ նա էր դարձել խմբի ղեկավարը։ Նա մեկ-մեկ բաց արեց բոլոր հանգույցները, քանի երեկոյթին անքուն գիշերներ էր անցկացրել ամեն ինչ հասկանալու համար։

— Մնում է մի բանի անհայտ հարց,— ասաց նա,— ինչո՞ւ է մարդը փոխել անունը, ինչ է Վարդյանի իսկական անունը, ճի՞շտ եմ ասում։

— Ճիշտ է,— ասացի ես։

— Ճի՞շտ է, իմ զարմիկ բարեկամ։

Բայց Ռուբենն էլ չէր լռում, լալիս էր հեծկլտալով։

— Գինդ կաց,— կես հրամայական, կես խնդրանքով ասաց Կարոն։

Ես ավելի ամուր գրկեցի Ռուբենի ուսերը։

— Ամենախորհրդավորն այն է, որ իմ զարմիկ բարեկամի հայրը փախչում է այդ գնչուից։ Անշուշտ, նա հեչ էլ գնչու չի, իրավաբանության ուսանող է եղել, աքսորվել է հեղափոխական թռուցիկների համար, հետո իմ զարմիկ բարեկամի հոր հետ փախել է աքսորից ու հայտնվել գնչուների խմբում։

— Ինչո՞ւ,— չհամբերեցի ես։

— Սպասիր, դա կարևոր չի, գն, երևի, թաքնվել են ազատվելուց։

— Ճիշտ է,— ասացի ես։

— Հիմա մենք ի՞նչ ենք անելու,— շարունակեց Կարոն,— հիմա մենք պիտի իմանանք, թե ինչ է ուզում այդ մարդը իմ զարմիկ բարեկամի հորից, ճի՞շտ եմ ասում։

— Ճիշտ է։

— Պետք է իմանանք իմ զարմիկ բարեկամի հոր իսկական անունը։

— Ճիշտ է։

— Պետք է իմանանք, թե ով է կորպուսի հրամանատար Դումենկոն։

— Ճիշտ է,— ասացի ես,— Վարդյան քեռին հենց նրա անունը լսելիս վախեցավ։

Վերադարձի ճանապարհին Ռուբենը դեռ լալիս էր։ Նրան ամենից շատ այն էր վշտացրել, որ Ցոլակն իր հարազատ հայրիկը չէ։ Ռուբենը սիրում էր Ցոլակին, պարծենում, որ Ցոլակը մեխանիկական արհեստանոցի բանվոր է, իսկական բանվոր։

— Հայրիկ,— արցունքի միջից մոլորված ասում էր նա,— Ցոլակ ջան, Ցոլակ...

Իսկ ես ավելի շատ հիացած էի Կարոյի խելքով, դրա համար էլ ծառուղու ծայրին ասացի.

— Լսի՛ր, Քաջ բազուկ, դու իսկական էն բանն ես, Շերլոկ Հոլմսը։

— Հոլմսը,— ուղղեց Կարոն։

Ինչ արած, Փառանձեմի սիրտը մեր մեջ ամենից կարդացածն էր։

ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

## ԳՆՉՈՒՆԵՐ

Փարթ էր թաղը։ Գետը գործարանից այն կողմ անդնդախոր ձորն էր, որի պռունկին դեռ երևում էին բերդի կանգուն պատերը։ Ձորի այն ափին Դալմայի այգիներն էին, այգիները ցանկապատված թուրը այգեպատներով։ Ուշ աշնանը ձորն ու Դալմայի այգիները ամայի էին ու խորհրդավոր։ Դրանք հազար ու մի լեգենդներ ունեին, որոնցից մեկն էլ սարսափեցնում էր «Անանունների բա-գիրներ» խմբի անդամներին, էլ չեմ ասում Թաղի «հասարակ» տղաների մասին։ Բայց այդ օրերին ձորը մի առանձին հետաքրքրություն էր ներկայացնում մեզ համար։ Բանն այն էր, որ գնչուներն ամենևին էլ չէին չքել։ Նրանք ձմեռել էին ձորի փոքրիկ քարանձավներում և մեր ու այս էին գործում շրջակա Շենգավիթ, Նորագավիթ ու մյուս գյուղերի մայրիկների համար։ Արդեն երկու անգամ Ռուբենը Ղանթարում հանդիպել էր մեզանյա զանգ-պանիր տղային ու մի անգամ, նույնիսկ, բամփել նրա գլխին։ Երեկոները, երբ մենք կանգնում էինք գետի ձորն իջնող ոլորապտույտ արահետի եզրին, նկատում էինք ձորից բարձրացող ծուխը, իսկ մի օր տեսանք իրեն՝ էշերի կոշկակարին, որ դանդաղ վեր էր բարձրանում արահետով։

Կարոն բացատրեց աշխատանքի ծրագիրը.

— Հարկավոր է հետևել էշերի կոշկակարին, որ իմ զարմիկ բարեկամի հորը վնաս չտա, ճի՞շտ եմ ասում։

— Իհարկե։

Բայց էշերի կոշկակարին հետևելն այնքան էլ հեշտ չէր, այն էլ մեզ համար, որ օրվա մի բանի ժամը դպրոցում պիտի լինեինք, էլ չեմ ասում, որ տանն էլ հարկավոր էր դասերը պատրաստել։ Բացի դրանից մենք ուրիշ հոգսեր էլ ունեինք։ Իմ զարմիկ բարեկամի հայրը մտամոլոր էր դարձել։ Իմ զարմիկ բարեկամն ասում էր, թե նա այլևս երեկոները թերթ չի կարդում, փակ հանգցնում է լույսն ու պառկում անկողնում՝ նախօրոք դուռը ներսից կողպելով։ Իմ զարմիկ բարեկամը երեկոները տնից դուրս գալու հնարավորություն չուներ։ Երեկոները մեր խմբում փաստորեն երկու մարդ էր մնում. հրամանատարը՝ Քաջ բազուկը, և ես՝ Օգնող ձեռքը։ Այն էլ պիտի ասեմ, որ Քաջ բազուկն ինձ առանձին հանձնարարություն էր տվել, մի հանձնարարություն, որ ինձ կտրել էր խաղերից, զրկել կոնֆետի թղթերը, փայլուն կաղիններս, հույս...

«Գիտությունը ուժ է», այսպես էր գրված մեծ ու լուսավոր սրահի պատին, ու դրա տակ, երկար սեղանի առաջ նստած ուժ էին հավաքում տասնյակ մարդիկ։ Դրանք, մեծ մասամբ հասակավոր էին, բանվորներ, ծառայողներ։ Ու դրանց մեջ միայն մեկը կար, որ երեխա էր, թեև գալիս էր ուժ հավաքելու։

Հենց առաջին օրը գրադարանավարուհի ընկեր Հասմիկին ասացի.

— Հեղափոխության մասին, ռազմական գիրք։

— Շատ է,— պատասխանեց նա ժպտալով,— գուցե հեքիաթնե՞ր կարդաս։

Բայց ես դեմքս թթվեցրի. այդ ընկեր Համբիկը չգիտեր, որ հեքիաթները ես արդեն վաղուց էի կարդացել, չգիտեր, որ ես խաղերս թողնում եմ լուրջ նպատակներով ու ոչ թե «Պապի շաղգամը» կարդալու:

Նա, այնուամենայնիվ, ինձ համար մի քանի գիրք ջոկեց քաղաքացիական կռիվների մասին:



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Տաս օր հետո Կարոն ու Ռուբենն ինձ հետ համեմատած խակական տգետներ էին: Նրանք, երևի, Կոլչակի ու Դենիկինի անունները էլ չէին լսել, իսկ ես մանրամասն կարդացել էի այդ բարբարոս գեներալների մասին և դեռ գիտեի զարմանալի բաներ: Գիտեի, օրինակ, որ եղել է մի Մախնո հայրիկ, անիշխանական: Դեմքն անմազ, սարսափելի դաժան ու վախկոտ: Կռվել է կարմիրների դեմ (իմ կարծիքով անիշխանականն էլ հենց այդ էր նշանակում): Եղել է մի «մաղալո» կին Մարուսյա անունով, նույնպես անիշխանական: Ինքը տղամարդու շորեր է հագել, իր զինվորները՝ կանացի բարձրակրունկ կոշիկներ: Քաջ բազակն ու Իմ գայուկ բարեկամը զարմանքից աչքերը չռում էին, երբ աղբյուրի ծառուղում ես այդ բոլորը պատմում էի նրանց: Զարմանում էր նաև գրադարանավարուհի ընկեր Համբիկը, բայց նա զարմանում էր ուրիշ բանի վրա: Տասներկու տարեկան երեխան, հեքիաթներն ու առակները թողած, ժամերով կարդում էր քաղաքացիական կռիվների պատմությունը, որից, ինչպես համոզված էր ընկեր Համբիկը, շատ բան չէր հասկանում: Եվ, ճիշտն ասած, որոշ բաներ անհասկանալի էին ինձ, բայց դա իմ հոգը չէր, ես կատարում էի խմբի հանձնարարությունը, որոնում էի կորցրած հրամանատար Դումենկոյին, որի անունը կար «Չի, ծի, ծի» երգում, որի անունը տվել էր էշերի կոշկակարը և որից այնքան վախեցել էր Վրանգել բարոնը:

Բայց կորցրած հրամանատարն այդպես էլ չէր հանդիպում ինձ: Բուդյոննին կար, նա, նույնիսկ, նրա ծանոթ նկարը տեսա գրքում, կար և մյուսը՝ Խուդյակովը: Նրանք կռվել էին սպիտակների դեմ և ջարդել էին նրանց, ո՜նց էին ջարդել: Բայց Դումենկոն չկար ու չկար:

Քաղաքացիական կռիվների մասին գրադարանում եղած գրքերի մեծ մասը արդեն կարդացել էի, մնում էին մի քանի բարակ գրքեր: Բայց ամեն անգամ Քաջ բազակի ու Իմ գայուկ բարեկամի հարցական հայացքներին պատասխանում էի տխուր.

Չկա, տղերք, հասերն արդեն պրծնում եմ:

Եվ մի օր, վերջապես, ես նրան գտա: Դա վեր-

*ջին ու ամենաբարակ գրքում: Այստեղ գրված էր նրա անունը, նրա անունի վրա ծաղկի նման մի փոքրիկ նշան էր արված: Մի այդպիսի նշան էլ կար էջի ներքևում ու դրա կողքին գրված էր. «Բորիս Մոկեևիչ Դումենկո—ծախվեց հակահեղափոխությանը, գնդակահարվեց 1920 թ. մայիսի 11-ին Ռազմահեղափոխական խորհրդի որոշմամբ»:*

*... Առաջին թաց ձյունը ծածկել էր խաշամն ու գլխարկի հովարի նման կախվել աղբյուրի ծայրից: Իր զինվորական վերնոցի մեջ դողդողում էր իմ դալուկ բարեկամը: Աղբյուրի մոտ պպզած Բաչ պապուկը մռայլ կիտել էր հոնքերը, իսկ ես ոգևորված պատմում էի իմ նոր հայտնագործությունը.*

*— Արդեն հասկացել էի: Մտածում էի, որ եթե այս հաստափոր գրքերում դրա անունը չկար, ապա այս բարակիկ գիրքն ի՞նչ է, որ...*

*— Կարճ,— կարգադրեց Բաչ պապուկը:*

*Բայց ես կարճ պատմել չէի կարող, նրանք ստիպված էին լսել ամբողջը:*

*Իմ պատմությունից հետո Բաչ պապուկն ավելի մռայլվեց.*

*— Ուրեմն, իմ դալուկ բարեկամի հայրը դավաճանի գործակից է եղել, դրա համար էլ թաքնվել է, փոխել անունը...*

*— Վարյաս բոլորն այդպիսին չի,— բողոքեցի ես:*

*Ոչինչ չխոսաց, ընկավ ձյունոտ խաշամին ու սկսեց լաց լինել...*

(Շարունակելի)



ՍԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

*(Հիշողություն)*

Մեր գյուղում աղավնի խփելը մեծագույն հանցագործություն է, աղավնու միս ուտելը՝ մեղք, աղավնի պահելը՝ վտանգավոր գործ: Եվ եթե մեկը աղավնի է պահում, իրեն ամբողջովին պիտի նվիրի աղավնիներին: Այդպես անում էր մեր թաղի Գրիգորը:

Գրիգորը մոտ հիսուն կույգ աղավնի ուներ, ինչպես նա սիրում էր ասել՝ հարյուր հատ: Ինչպիսի աղավնի ասես, որ նա չուներ՝ գորշ ու կապտավուն, սև ու սպիտակ, կարմրագույն ու նախշուն, կային «բոխախ» ունեցողներ, կային «փոչոտներ» և այնպիսիները, որոնց ոտները մերկ էին, կային «երգիչներ» ու կային «թախլա» տվողներ: Վերջիններս օդում այնպիսի պտույտներ ու գլուխկոնծի կարող էին տալ, որ մենք, երեխաներս, իսկի գետնի վրա չէինք կարողանում անել:

Ամեն անգամ Գրիգորենց տան մոտով անցնելիս, ես կանգ էի առնում ու նայում աղավնիներին, երբեմն՝ նույնիսկ ժամերով: Մի անգամ մեր տունը հյուր էր եկել, իսկ մենք, հակառակի պես, հաց չունեինք: Մայրս ուղարկեց հարևանի տանից «փոխ» հաց բերելու: Վերադարձին այնքան էի կանգնել Գրիգորենց տան մոտ, որ երբ տուն եկա, հյուրն արդեն գնացել էր: Մայրս, իհարկե, ականջներս մի լավ քաշեց:

Գրիգորը շատ էր սիրում իր աղավնիներով պարծենալ: Հենց նկատում էր ինձ, իսկ նա գրեթե միշտ պատշգամբում կամ կտրանն էր լինում, սկսում էր ցուցարար գործնականությամբ մաքրել աղավնիների բները, կուտ տալ, ջուրը փոխել: Երբ իր անելիքը վերջացնում էր, մի հայացք էր գցում ինձ վրա՝ կարծես ստուգելու համար դեռ տեղո՞ւմ եմ, թե՞ ոչ, և բռնելով իր «թախլաչիներին», բարձրանում էր կտուրը: Ես հենց դրան էի սպասում, որովհետև ամենից շատ սիրում էի տեսնել աղավնիների ճախրանքը:

Պատահում էր, որ Գրիգորը տանը չէր լինում: Ես այն ժամանակ նստում էի մի քարի ու նայում աղավնիներին, լսում նրանց ղեղղեղանքը: Ես արդեն գիտեի նրանցից յուրաքանչյուրի ձայնը, գիտեի, թե ինչ են ուզում նրանք՝ երբ է կուտը պակաս, երբ ջուր չկա:

Եվ ես երազում էի աղավնի ունենալու մասին: Աչքերս փակում էի ու պատկերացնում, թե մեր պատշգամբը լի է աղավնիներով ու, չգիտեմ ինչու, հավատացած էի, որ մի՛օր այդպես է լինելու:

Ու մի օր էլ տուն է գալիս հայրս ու կանգնում բաց դռների մեջ՝ ձեռքերը պահած հետևում: Կանգնել ու ինձ է նայում: Նայում է ու ժպտում: Նա ոտից-գլուխ ալրի մեջ է՝ մազերը, բեղերը, հագուստներն ու կոշիկները: Հետո նա ձեռքերն առաջ է բերում և ես քիչ է մնում ուրախությունից ճչամ: Նրա ձեռքերում մի կույգ աղավնի կա: Մոխրագույն են, այնպես է թվում, թե նրանք էլ են ալրոտ: Ես տեղիցս չեմ շարժվում: Հանկարծ ու հայրիկն ասի, թե աղավնիներն իմը չեն: Բայց չէ, նա ժպտալով հորդորում է ինձ.

— Թող մի տեսնենք:

Վերջապես ես հասկանում եմ, որ աղավնիներն ինձ համար են, և նետվում եմ դեպի հայրիկս:

Աղավնիների ոտները կապված էին: Ես առաջին հերթին քանդեցի այդ կապերը և շտապեցի մառան, որտեղ ապատ արձակեցի նրանց: Ներս վազեց նաև քույրս, որն ինձնից քիչ չէր ուրախացել, կարծես աղավնիներն իրենն էին: Դա ինձ մի փոքր ջղայնացնում էր, բայց առանձնապես չէր անհանգստացնում: Դե, աղջիկները աղավնի պահելու հետ գլուխ չունեն, նա պարզապես ուրախանում էր ինձ համար:

Կուտ ու ջուր տալով աղավնիներին՝ ես քրոջս դուրս արեցի մառանից, պգուշորեն փակեցի դուռը ու ինքս էլ գնացի հայրիկի մոտ:

Հայրիկս բակում խոզանակով շորերն էր մաքրում և հիմա նա բոլորովին ուրիշ տեսք ուներ, սակայն բեղերի ու քունքերի վրայի բարակ ալրափոշին չէր գնացել: Դրանք ալրոտ են թվում, երբ ջրաղացպան հայրիկս ամբողջովին ալրոտ է, իսկ երբ մաքրում է շորերը, մազերի վրայի սպիտակը մնում է:

— Լավ պահիր,— ասում է նա,— աղավնու հետ լավ կվարվեն:— Հետո մտնում է մարագ, պատից իջեցնում մի հին քարմաղ ու ավելացնում.— Սա էլ բույն:

Մաղը նա մի քանի մեխի օգնությամբ ամրացնում է պատուշգամբի սյանը, գրեթե օձորքի տակ ու, դառնալով ինձ, ասում է.

— Մի երկու շաբաթ դեռ տանը պահիր, թող վարժվեն քեզ, հետո բաց կթողնես:

Բայց ես մի՞թե համբերություն ունեի երկու շաբաթ սպասելու: Հենց հայրիկս վերադարձավ ջրաղաց, աղավնիներն առա ու վազեցի կալ՝ տղաների մոտ: Նրանք իսկույն շրջապատեցին ինձ.

— Որտեղի՞ց...
— Քո՞նն են...
— Ո՞վ է տվել...
— Ինչ էլ լա՜վն են...
— Դեռ ձագ են,— ասաց Գուրգենը:
— Ո՜վ ասաց ձագ են:
— Ձագ են, է՛լի, մեծ ձագեր են:

Ես ոչ մի կերպ չէի ուզում համաձայնել, որ իմ աղավնիները ձագ են, բայց Գրիգորի եղբայրը՝ Արշավիրը նույնպես կալում էր և նա էլ հաստատեց, որ ձագ են:

Իմ տրամադրությունն, ինչ խոսք, որ ընկավ, բայց ոչ այնքան:

— Ի՞նչ անենք ձագ են, եկող տարի ձագ չեն լինի,— ասացի ես, բայց հանկարծ ինձ թվաց, որ եթե աղավնիներս բաց թողնեմ, չտեսնված բաներ կանեն, նույնիսկ ավելի լավ «թախլա» կտան, քան Գրիգորի սպիտակները: Եվ չգիտեմ ինչպես եղավ, որ Գրիգորի նման «ալե-հո՜պ» ասելով բաց թողեցի աղավնիներիս: Նրանք նախ մի քիչ բարձրանալով անմիջապես ցած ընկան, ապա մի քանի քայլ օրորվելով գնալուց հետո, թռան նստեցին մարագի կտուրին:

— Ի՞նչ էի ասում,— վրա տվեց Գուրգենը,— տեսա՞ր, որ ձագ են, իսկի թռչել էլ չեն կարողանում:

Բայց Արշավիրը, որն աղավնու հարցում մեր մեջ ամենահեղինակավոր տղան էր, ասաց, թե երկար ժամանակ չթռչելուց է այդպես: Եվ իրոք, երբ ես մագլցելով բարձրացա կտուրին կից ցածր պատի վրա, իմ գորշուկները թռան: Ես մի կողմից ուրախացա դրա համար, բայց միաժամանակ սիրտս ահ ընկավ, հանկարծ ու վերադառնան նախկին տիրոջ մոտ: Եվ նրանք ընդամենը մի կիսապտույտ կատարելով կալի վրա, գնացին նստեցին եկեղեցու գմբեթին, խառնվելով այնտեղ բույն դրած բազմաթիվ վայրի աղավնիներին, որոնց մենք «վերունի» էինք ասում:

Ես հուսահատ վազեցի եկեղեցու բակը: Իմ հետևից եկան նաև տղաները, բայց երբ մենք հասանք եկեղեցու բակ, աղավնիները չերևացին: Ոչ ոք չէր տեսել, որ նրանք եկեղեցու գմբեթից թռած լինեին, պարզ էր, որ այնտեղ էին, սակայն օրվա այդ ժամին եկեղեցին փակ էր լինում և հնարավոր չէր ներս մտնել: Աղավնիներն ավելի շատ կանգնում էին ներսի կողմից, գմբեթի քիվի վրա:



— Հին տիրոջ մոտ գնացած կլինեն,— ասաց Գուրգենը: Պարզ էր, որ ինքն էլ հավատացած չէ դրանում, իր սովորության համաձայն, ասում է իմ տրամադրությունը փչացնելու համար:

— Չէ, ներսն են,— իր հեղինակավոր կարծիքն այս անգամ էլ ասաց Արշավիրը:

— Բարձրանանք կտուրը,— առաջարկեց Նորիկը ու շուռ եկավ դեպի Եգորը: Եգորին նայեցին նաև մնացածները:

Եգորը գրեթե միակն էր, որ կարողանում էր մագլցել մինչև եկեղեցու խնձորակը: Նա նույնիսկ այդ անում էր գիշերը: Քանի՜-քանի՜ անգամ էր նա բարձրացել գիշերով ու վայրի աղավնու ձտեր իջեցրել: Իսկ դա հեշտ բան չէր: Մոտ հինգ մետր նա բարձրանում էր հարթ պատի վրայով, ուր քարերը սրբատաշ էին, և միայն նրանց արանքներից թափված շաղախի ճեղքերից կառչելով էր նա բարձրանում:

Ես այնպես էի նայում Եգորին, որ նա անշուշտ հասկացավ, թե իմ միակ հույսը ինքն է և միա՛յն ինքը կարող է վերադարձնել իմ այնքան երկար ժամանակ

երապած և այնքան թեթևամտությամբ կորցրած աղավնիները:

Եգորը նայեց եկեղեցու գմբեթին, մի քիչ հապաղեց ու ասաց.

— Լա՛վ, գիշերը:

— Չես ջոկի,— ասաց Արշավիրը:— Բոլորն էլ մի գույնի են: Արտակի աղավնիներն էլ են մոխրագույն, բան չի դուրս գա:

Արշավիրի հայտարարությունը ինձ վերջնականապես հուսահատեցրեց: Ես հազիվ էի արցունքներս պահում:

Բայց երևի այնպես էր վիճակված, որ իմ գորշուկները նորից վերադառնան ինձ մոտ: Օգնության հասավ էլի Արշավիրը: Նա իր սովորության համաձայն խփեց ուսիս ու ասաց.

— Գնանք, Գրիգորը մի բան կանի:

Եվ իրոք Գրիգորն այդ «մի բանն» արեց և շատ ավելի հեշտ, քան կարելի էր սպասել: Նա բարձրացավ պատշգամբ և բավական արագ վերադարձավ՝ մի զույգ աղավնի ձեռքին:

— Մի՛ վախեցի, թե ժամի կտուրն են, սրանք «կքոլոմստեն»,— ասաց նա:

Նորից բոլորս գնացինք եկեղեցու բակը:

Առջևից գնում էր Գրիգորը իր «քոլոմստող» աղավնիների հետ, հետևից՝ մեր ամբողջ խումբը: Ես աշխատում էի շատ ետ չընկնել Գրիգորից, վերջին հաշվով նրանից հետո այդ օրվա հերոսը ես էի:

— Ումի՞ց ա հերդ առել,— հարցրեց Գրիգորը:

— Չգիտեմ... չի ասել:

— Մշեցու տղից առած կլինի,— եզրակացրեց նա:

— Իկուր էլ նրանից ա առել, ինձ ասեր մի զույգ էնպես աղավնի տայի ո՞ր...

Վերջապես հասանք եկեղեցու բակը և Գրիգորն իր աղավնիներին բաց թողեց եկեղեցու կտուրը: «Քոլոմըստող» աղավնիները թռան ուղիղ եկեղեցու գմբեթը: Գրիգորն իր գործը դրանով ավարտած համարեց:

— Վաղը առավոտ կգաս աղունիկներդ կտանես,— ասաց նա այնքան վստահ, որ իմ անհանգստությունը գրեթե անցավ: Բայց ես էլի դժգոհ էի, որ ամեն ինչ միանգամից չեղավ: Արշավիրն ասաց, որ Գրիգորի զույգը դեռ պիտի երկար ժամանակ իմ աղավնիներին «քոլոմստի», այսինքն խաբի, համոզի և միայն գիշերը նրանք կհամոզվեն:

Հետո տղաներն սկսեցին աթուրմա խաղալ, միայն ես էի անընդհատ պտտվում եկեղեցու շուրջը, աշխատում տեսնել, թե Գրիգորի աղավնիներն ինչպես են «քոլոմստում» իմ գորշուկներին: Բայց ոչինչ չէի տեսնում ու միայն լսում էի աղավնիների ղեղղեղանքը:

Մյուս օրը վաղ առավոտյան Գրիգորենց պատշգամբի դիմաց էի: Ճիշտն ասած, ես չէի սպասում, թե Գրիգորն արթնացած կլինի, և միայն ուզում էի տեսնել, թե եկե՞լ են աղավնիներս: Բայց Գրիգորն արդեն պատըշգամբում էր և զբաղված էր իր առօրյա գործով՝ կուտ ու ջուր էր տալիս աղավնիներին, մաքրում էր բներն ու պատշգամբը: Ինձ տեսնելով՝ նա գլխով ցույց տվեց, որ ներս մտնեմ: Դա այնքան էլ հեշտ բան չէր, որովհետև բակում բավական կատաղի շուն կար: Տեսնելով, որ ես դռան մոտ մի ոտից մյուսն եմ հենվում ու սիրտ չեմ անում ներս մտնել, ասաց իրեն հատուկ կապտությամբ.



— Արի՛, արի՛, մի՛ վախենա, կապած ա:

Ես սրտի դողով մտա բակ ու բարձրացա պատըշգամբ, նույնիսկ ուշք չդարձնելով բակի հեռավոր անկյունում իր շղթան ձիգ տվող շան հաչոցին: Ուրիշ անգամ ես կապած շնից էլ էի վախենում... Ո՞վ գիտի, շունն է՝ մեկ էլ տեսար կապը կտրեց:

— Քո բախտից, եկել են,— ասաց Գրիգորը, երբ դեռ աստիճանների վրա էի: Սիրտս այնպես սկսեց թփրտալ, որ շունչս կտրվեց:

Գրիգորը մտավ մարագ ու քիչ հետո դուրս եկավ իմ աղավնիները ձեռքին: Աչքերիս քիչ էր մնում չհավատայի, բայց դրանք իրոք իմ գորշուկներն էին:

— Առաջին անգամ տալիս եմ,—կգուշացրեց նա,— մեկ էլ որ եկան՝ չեմ տա, օրենք ա: Դե հիմի, հա՜յդա, գնա կուտ տուր, սոված են,—ասաց նա՝ ցույց տալով աղավնիների պարանոցը:

Ես՝ նետվեցի դեպի տուն, իսկ Գրիգորը հետևիցս ձայն տվեց.

— Տե՜ս, ասել եմ, մյուս անգամ չեմ տա:

Ամբողջ օրը ես աղավնիների հետ էի: Սակայն ինձ համար արդեն պարզ էր, որ այլևս նրանց ազատ արձակել չի կարելի: Տղաների հետ մտածում էինք, որ մի ճար գտնենք: Ամեն մեկը մի բան էր ասում, ես լսում էի նրանց, բայց մտածում իմ անելիքի մասին: Պետք էր այնպես անել, որ աղավնիները վարժվեն տանը, իրենց նոր բնին:

Ամբողջ օրը ես աղավնիների հետ էի և միայն ուշ երեկոյան, երբ տղաները մեկ-մեկ հեռացան, ես գորշուկներիս տեղավորեցի մեծ կողովի տակ, վրան մի մեծ քար դրեցի, որ հանկարծ կատուները շուռ չտան, ու գնացի քնելու:

Առավոտյան, դեռ կիսաքուն վիճակում անկողնում պառկած, ես զգացի, որ այդ օրը ինձ համար սովորական օր չի, բայց թե ինչու՝ մոռացել էի: Հանկարծ հիշեցի գորշուկներիս ու տեղիցս վեր թռա, շորերս մի կերպ վրաս գցեցի ու վազեցի դեպի կողովը: Աղավնիներից մեկն անմիջապես ձեռքս ընկավ, բայց մյուսը թռավ նստեց հարևանի պատշգամբի քիվին: Նորից տագնապ ընկավ սիրտս, շփոթմունքից քիչ մնաց բաց թողնեի նաև մյուսը, բայց վրա հասավ Մկոն՝ մեր հարևանի հոտաղը, և մենք մի կերպ կարողացանք գոնե այդ մեկին պահել:



— Մի՛ վախեցի,— ասաց Մկոն,— սրան որ պահես, էն մեկն ինքն իրեն կգա:

Եվ իրոք, պատշգամբի քիվին նստած աղավնին անթարթ նայում էր ընկերոջը: Նայում էր, բայց իջնելու նշաններ ինչ-որ ցույց չէր տալիս: Այդպես նա մեկ նայում էր ընկերոջը, մեկ ինձ, կարծես ուզում էր ինձ համոզել, որ ձեռքիցս բաց թողնեմ նաև մյուսին: Բայց չէ, ես արդեն հասկացել էի փոքրիկ խորամանկին և արդեն գիտեի, որ նա հեռու չի գնա: Մնում էր մի ճար անել, որ ընդհակառակը, ինքը ցած իջնի: Դրա հնարն էլ Մկոն գտավ: Մենք քարեմաղը շուռ տվեցինք գետնին, տակը կուտ ցանեցինք, աղավնու մեկը դրեցինք մեջը: Մկոն մի բուռ կուտ էլ ցանեց մաղից դուրս և ամանով ջուր դրեց: Քիչ հետո փախած աղավնին իջավ ուղիղ մաղի մոտ, բայց ոչ թե կուտ կերավ, այլ սկսեց ընկերոջը համոզել, որ փախչի: Մաղի տակից ընկերը պատասխանեց, որ չի կարող: Հետո նրանք երկար կռուցում էին իրար հետ աղավնիական իրենց գեղգեղուն լեզվով ու վերջապես դրսինը սկսեց մեկ-մեկ, կարծես թե հենց այնպես, կտցել թափված կուտը: Հետո նրա ախորժակը բացվեց ու կարճ ժամանակում մաքրապարդեց ամբողջ կուտն ու դեռ ջուրն էլ վրան խմեց: Երբ արդեն կերել-խմել էր, կպավ մաղին ու կուչ եկավ: Մկոն կամաց, ոտների թաթերի վրա մոտեցավ աղավնուն, բայց սա փախչելու միտք էլ չուներ, այնպես որ նա հեշտությամբ բռնեց փախստականին:

Բայց իմ սիրտն անհանգիստ էր: Հո չէի՜ կարող ամբողջ ժամանակ նրանց կողովի տակ պահել: Ես երազում էի նրանց ճախրանքը տեսնելու մասին, ուզում էի տեսնել նրանց զարմանալի գլուխկոնծիներն ու պըտույտները օդում: Մկոն առաջարկեց թևերը խուզել: Դա ինձ սկզբում ամենևին դուր չեկավ, բայց նա համոզեց.

— Մինչև նորից թևերը գան, ձեր տանը լավ կսովորեն:

Մայրիկս ասաց, որ Մկոն խելքի մոտ բան է ասում, ու ես գործի անցա: Մկրատով խուզեցի նախ թևերի ծայրը, բայց տեսա, որ դա թռչելուն չի խանգարում, խուզեցի էլի: Հետո ես բաց թողեցի իմ ձախորդ գորշուկներին, բայց նրանք դարձյալ թռչկոտելով բարձրացան հարևանի կտուրը: Այստեղ Մկոն ջղայնացավ ու բռնելով աներեսներին մեկ-մեկ քաշեց նրանց խոշոր փետուրները:

Այս անգամ արդեն ամեն ինչ բարեհաջող անցավ: Իմ աղավնիները դարձան այնքան հեզ ու խոնարհ, որ կտի ու ջրի մոտից չէին հեռանում: Շուտով նրանք խառնվեցին մեր հավի ճտերին ու նրանց հետ էին կուտ ուտում, նրանց հետ էին շրջում բակում և նույնիսկ սովորեցին քուջուջ անել:

Մի քանի օր հետո հայրս ջրաղացից տուն եկավ և տեսնելով բակում քուջուջ անող աղավնիներին, ասաց

— Այ տղա, էս ի՞նչ ես արել, հավ քի՞չ ունեինք, ի՞նչ է...

Ես ոչինչ չպատասխանեցի, բայց վերջին օրերին ես էլ էի այդ մասին մտածել ու սիրտս բոլորովին էլ ուրախ չէր: Դե, իհարկե, էլ ի՞նչ աղավնի, որ թևեր չունենա, չճախրի, չթևածի:

# ԴԻԿ ՋՈՆՍԻ ԿՈՐԾԱՆՈՒՄԸ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Դիկ Ջոնսը ես էի, երեսուն տարի առաջ Թեխասում:

Դահլիճի կենտրոնական ջահի էլեկտրալամպերը մարեցին. ապաները անհամբերությունից սկսեցին այնպես սուլել ու գոռգոռալ, որ կինոմեխանիկն անմիջապես անջատեց մնացած հատու-կենտ լույսերը և միացրեց կինոապարատը: Լուսավոր էկրանի վրա խոշոր տառերով գրվեց. «Երրորդ սերիա»: Բոլորը բարձրաձայն կարդացին.

«Երրորդ սերիա»:

Մի պահ աղմուկը և ձմերուկի սերմ չրթելը դադարեց: Դահլիճում տիրեց անհամբերական լռություն: Կինոնկարը սկսվեց: Երկնաքերի հարյուրերորդ հարկի սենյակներից մեկում, Դիկ Թոմսոնի և հինգ գանգստերների միջև, բռնցքամարտ շարունակվում էր: Մեկ հարված, երկու, երեք... գանգստերներից վերջինը տապալվում է: Բայց մյուս չորսը, որ արդեն ոտքի էին ելել, խմբով հարձակվում են Դիկի վրա, իսկ Դիկը գեղեցիկ ցատկով հասնում է հսկայական ջահին, կախվում նրանից և հենց այդտեղից էլ գրոհում է գանգստերների վրա և բոլորին ցած գլորում: Ի վերջո գանգստերներին հաջողվում է Դիկին սեղմել պատուհանին: Շրջանակը նեղանում է լինում, և Դիկը հարյուրերորդ հարկից շպրտվում է փողոց:

Այդպես էր ավարտվել երկրորդ սերիան... Բայց ոչ: Հիմա նա ցած չի ընկել, այլ կարողացել կառչել ներքևում եղած պատուհանից, պատուհանին էլ իր ձեռքերով մազից կախված, ճոճվում էր անդնդախոր փողոցի վրա: Գանգստերներից մեկը, այն, որ բաստակոսի գծավոր շապիկ ուներ, ոտքի հարվածով ուզեց պոկել մազից կախված պատուհանը: Բայց նախքան նա այդ կաներ, Դիկը թափ առավ և իրեն նետեց դեպի կից լուսամուտը: Փշրեց ապակին և հայտնվեց հարևան սենյակում:



Իսկ գանգստերները արդեն այդ սենյակի դռան մոտ են: Նրանք խմբովին ուսերով հարվածում են դռանը: Բայց մինչև նրանց կհաջողվի խորտակել դուռը, Դիկը ինքը բաց է անում այն, և հինգ հակառակորդները, որոնք թափ էին առել հարվածելու դռանը, թափագլոր փռվում են սենյակի հատակին: Դիկը փախչում է:

Հիմա նա երկնաքերի կտուրին է: Մինչև հետապնդողները կհասնեն նրան, նա մի գեղեցիկ ցատկով այդ երկնաքերի տանիքից թռչում է մյուս երկնաքերի վրա: Վերջապես նա փրկվում է, ճիշտ այնտեղ, որ ավտոմեքենայով նրան են սպասում հերոսուհին և նրա հայրը: Հիմա գանգստերները Դիկին հետապնդում են իրենց սև ավտոմեքենայով, իսկ ոստիկանական մեքենան իր հերթին՝ գանգստերներին:

Դիկի ավտոմեքենան գանգստերների արձակած գնդակից վթարի է ենթարկվում: Գանգստերները ատրճանակի կոթով հարվածում են հերոսուհու հոր գլխին: Հայրը ուշաթափ է լինում, իսկ Դիկի հետ իրենց հաշիվը մաքրում են ատրճանակի մի գնդակով: Դահլիճում բոլորը, գանգստերներից բացի, գիտեին, որ Դիկը չի սպանվել: Եվ քանի որ Դիկը նրանց համար սպանված էր, հիմա արդեն

նրանք ոլորում են հերոսուհու թևերը և, ուժով իրենց մեքենայի մեջ գցելով, փախչում են, առանց գլխի ընկնելու, որ Դիկ Թոմսոնը թաքուն տեղավորվել է ավտոմեքենայի հետնամասում: Հետո բռնցքամարտ սկսվում է ընթացող ավտոմեքենայի մեջ... հարված՝ գանգստերներից մեկը դուրս է շպրտվում:

Որքան ավելի էր լարվում գործողությունը, ես և մեծ եղբայրս ավելի արագ էինք չրթում նրա գլխարկի միջի դդումի սերմերը:

Ի վերջո Դիկին հաջողվում է բռունցքի զորեղ հարվածներով, զանազան բարձրություններից ցած գլորել գանգստերներին... Միայն, ափսոս, գետնին ընկած մնում են նրանց ատրճանակները... գոնե մեկնումեկը վերցներ դրանք: Ճիշտ է, ատրճանակները սպիտակ կոթով չէին, բայց էլի...

Սեանսի ժամանակ դահլիճում, ոգևորությունից մի քանի անգամ ոտքադոփոց սկսվեց, բայց նրանց նայող չկար, դրա համար էլ կռվողները կարճ կապեցին:

Դիկ Ջոնսը, այսինքն՝ ես, և եղբայրս տուն էինք վերադառնում:

Դիկ Ջոնսը այդ ես եմ:

Ես, Դիկ Թոմսոնի և կովբոյական ֆիլմերի հերոս Բաք Ջոնսի անունների խառնուրդից էի սարքել:

Ես կուրծքս ցցած քայլում եմ փողոցի մեջտեղով, իսկ մեծ եղբայրս՝ մայթով:

— Մայթ բարձրացիր,— լսում եմ եղբորս ձայնը:

«Ո՞չ»,— մտածում եմ ես, բայց դեռ ինձ զսպում եմ:

Հապա թող մի անգամ էլ համարձակվի:

Խանութներից մեկի բաց դռնից դատարկ ծխախոտի տուփ են դուրս շպրտում: Ես անմիջապես կռանում եմ վերցնելու:

— Թո՛ղ տուփը, մայթ բարձրացիր,— այս անգամ արդեն կարգադրում է եղբայրս:

Եվ այս անգամ արդեն իմ Դիկ Ջոնսը չի դիմանում և հարձակման է անցնում, չնայած եղբայրս հինգ տարով մեծ է ինձանից և կրկնակի էլ խոշոր:

Բռունցքի հարված:

Բայց ինչու՞ է ձեռքս այդքան կարճ... և թղթի պես թեթև... իսկ բռունցքս՝ ցնդանոցի գլխի չափ:

Ես այնպես զարմացա, որ տեսա իմ չռված աչքերը՝ այնքան չռված, որ ինձանից էլ մեծ էին:

Այդ ամենը այնքան նվաստացուցիչ էր, որ ես վիրավորանքից լաց կլինեի, եթե իմ զարմանքը ավելի մեծ չլիներ:

Ես դեռ հիշում եմ եղբորս քիչ ժպտացող, անչար ու խաղաղ դեմքը, այնքա՜ն խաղաղ...

Դա հաղթողի դեմք չէր, այլ... ուղղակի մեծ եղբայրը նայում էր իր փոքր եղբորը: Նայում էր իր կույր ու ժպտուն դեմքով, փափկեփերն այտերին և նեղացածիս... այն էլ ինչքա՜ն նեղացածիս:



Հետո արդեն, ես գլխիկոր, ուլիկի նման, պարանը վզիս, քայլում էի հեզ եղբորս հետևից: Ի՞նչ պետք է անել դրանից հետո:

Ու ես ճարահատյալ, ծխախոտի դատարկ տուփերի նման, մեկ-մեկ սկսեցի դեն շպրտել «Դիկ-ին», «Ջոնս-ին», հրաժարվել իմ առասպելական ուժից և ազնիվ ու մեծահոգի բռնցքամարտիկից վերածվեցի դիմակ-թաշկինակ կապած զույգ ատրճանակով գանգստերի և, աջ ու ձախ կրակելով, սպանեցի բոլորին: Ինձ այլևս ուժ պետք չէր, միայն կրակոցներ:

Ոչ որ ինձ մեղադրելու իրավունք չունի... ես հո չէի՞ կարող միանգամից հերոս դառնալ, չէ՞ որ ես ընդամենը տաս տարեկան էի:

Բայց քանի որ ես չէի կարող երկար ժամանակ չարագործ մնալ, մի քանի ժամ հետո դեն շպրտեցի ատրճանակները և որոշեցի մոտոցիկլիստ դառնալ:

Ով ուզում է, թող վերցնի այդ ատրճանակները...

# Գայլուկը

ՍԱՐԳԻՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

Գայլուկը շուն էր: Մեծ ու բրդոտ, հսկայական գլխով ու խելացի աչքերով:

Մանկատանը չկար մեկը, որ չսիրեր Գայլուկին, որին Սոսը գտել էր անտառում, բերել, խնամել ու մեծացրել էր: Անբաժան ընկերներ էին Սոսն ու Գայլուկը, իրար անսահման նվիրված:

Ծիծաղից թուլանում էին բոլորը, երբ ազատ ժա-



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

մերին շրջան կազմած՝ նստում ու նայում էին, թե ինչպես է Սոսը շանը պար ածում: Գայլուկը բարձրանում էր ետին ոտքերի վրա ու կլանչում: Ուրիշ շնորհքներ էլ ուներ այդ անսովոր շունը. գցեիր կամ պահեիր մի որևէ առարկա, կգտներ, կբերեր կտար Սոսին: Այս բոլորի հետ միասին կհամարձակվե՞ր արդյոք մեկը Սոսին մի թթու խոսք ասել:

Մի օր էլ լուր տարածվեց, թե պահեստից ջեմ են գողացել: Հավաքվեցինք հսկայական բակում, որպեսզի գողին գտնենք: Անցավ մեկ ժամ, բայց ոչ մի արդյունք: Գողը լռում էր, գողը չկար: Ու չեմ հիշում, թե տղաներից ո՞վ, ամբողջ թափով բղավեց՝ «Թող գողին գտնի Գայլուկը»: Մյուս երեխաները դրան պատասխանեցին «ճի՜շտ է, ճի՜շտ է» բացականչություններով: Իսկ Գայլուկը պառկած էր՝ գլուխը թաթերի մեջ: Բոլորը միասին վանկ առ վանկ բղավում էին՝ «Գայ-լուկ, գը-տի՛ր գո-ղին», բայց Գայլուկը տեղից չէր շարժվում: Բոլորը զարմացել էին: Շանը կողքից հրում էին, ստիպում էին, որ վեր կենա ու գտնի, իսկ շունը անշարժ էր: Աչքերը փակել էր ու ոչ ոքի չէր նայում: Հետո հիշեցին Սոսին, բերին տանը, որ հիմա էլ Սոսը համոզի:

— Երևի չգիտի, թե ով է,— ասաց Սոսը: Ուզում էր շոյել Գայլուկի գլուխը, բայց սա կծեց տիրոջ ձեռքը, բարձր հաչեց, հաչեց ու փախավ դեպի ձորը:

Մանկատան պահակը իսկույն եզրակացրեց, որ շունը կատաղած է, որ անպայման հարկավոր է սատկեցնել, ու պահեց հրացանը, որ կրակի: Սոսը վազեց, բռնեց նրա ձեռքերը ու լացով խնդրեց, որ չսպանի: Գայլուկը տեսադաշտից կորավ:

Սոսին սրսկեցին, ձեռքը կապեցին: Հաջորդ օրը ոչ ոք չիմացավ, թե Սոսը շանն ինչքան փնտրեց, բայց չգտավ:

... Տարիներ են անցել ու միշտ էլ ամոթով եմ հիշում, որ Սոսը այդ ես եմ, որ գողությունը կատարել էի ես, իսկ իմ շունը, իմ Գայլուկը այդ գիտեր:

Ու եթե մի օր հանդիպեք մեծ ու բրդոտ, հսկայական գլխով ու խելացի աչքերով մի շան, անունը՝ Գայլուկ, ասեք, որ դա իմ վերջին գողությունն էր, թող նա գա. կարոտել եմ, շա՜տ եմ կարոտել:

## ՍՈՍՆ Է ՍԱՀՈՒՄ

ԱՍՏՂԻԿ ԹԵՎԱՆՅԱՆ

Մայթի վրա, վեր ու վար,
Սոսն է սահում անդադար:
Մայթը դարձավ հայելի,
Բայց նա սահում է էլի:
Ձյունը՝ առատ, օրը՝ տաք,
Ուրախ է մեր Սոսը շատ:
Կանչ ու ծիծաղն անհասնում,
Եվ նա չի էլ նկատում,
Որ մի պապիկ կորացած,
Այդ մայթով է իջնում ցած:
Ծանր է ուսին՝ իր բեռը,
Դողդողում են ոտքերը:
Պապը սահեց, վայր ընկավ:
Լավ էր, Կարոն շուտ եկավ,
Օգնեց պապին, հանեց վեր,
Ձյունից մաքրեց ոտ ու ձեռ:
Նա բեռն առավ իր ուսին
Ու եւ նայեց մեր Սոսին,
Որ ամոթից կարմրած,
Լուռ գլուխն էր կախել ցած:
Էլ կխաղա՞ր նա մայթին,
Կխանգարե՞ր անցորդին:

Սերո Խանզադյանը մեր հանրապետության անվանի գրողներից է: Նա մի քանի մեծածավալ գործերի հեղինակ է և հաճախ է գրում նաև մանուկների համար:

Լրացավ Սերո Խանզադյանի ծննդյան հիսուն տարին:



# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԶՐՈՒՅՑՆԵՐ

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

## ԽԵԼՈՔ ՍԻՄՈՆԸ

Սիմոնի տունը մեծ առվի եզրին էր, մի փոքրիկ ճահճի մոտ: Ամռանը ողջ գիշեր այդ ճահճի մեջ կռկռում էին անհերես գորտերը:

— Քար-քար, քա՜ր...

— Կիր-գա՜ռ, կիր-գա՜ռ...

— Խա-խա-լը՜... խա-խա-լը՜...

Կռկռում էին այսպես ու փախցնում իր տան կտուրին պառկած Սիմոնի քունը:

— Քար-քար, քա՜ր...

— Կիր-գա՜ռ, կիր-գա՜ռ...

— Խա-խա-լը՜, խա-խա-լը՜...

Անքնությունից քիչ էր մնում Սիմոնը գժվի: Երկար մտածեց, տանջվեց ու մի գիշեր էլ գլխի ընկավ, որ գորտերը անվերջ «քար-քար» անելով՝ իրենից քար են պահանջում: Մայրը քարաշեններից երկու սայլ տաշած, հղկած քար էր գնել, որ որդու համար մի փոքրիկ սենյակ կառուցի հին տան վրա ու նրան պսակի: Սիմոնը իջավ կտուրից, այդ քարերը մեկիկ-մեկիկ վերցրեց ու նետեց ճահճի մեջ, որ գորտերի պահանջը կատարելով՝ նրանց ձայնը կտրի:

Գորտերը լռեցին, լռեցին ու, երբ Սիմոնը ետ եկավ, բարձրացավ կտուրը՝ քնելու, նորից սկսեցին կռկռալ.

— Կիր-գա՜ռ, կիր-գա՜ռ...

«Հիմա էլ անիրավները կիր են ուզում,— անքուն գլուխն օրորելով՝ մտածեց Սիմոնը:— Ի՞նչ, երևի գորտերն իրենց համար տուն են ուզում շինել: Քար ունեն, կիր է պետք»: — Մտածեց ու կտուրից իջավ, մտավ իրենց մառանը: Սենյակի համար մոր գնած կիրը վերցրեց ու մեկիկ-մեկիկ նետեց ճահիճը:

— Ա՜յ գորտեր, էս էլ ձեզ կիր: Հիմա թողեք մի քիչ քնեմ:

Բայց գլուխը հազիվ էր դրել բարձին, որ մի կուշտ քնի, երբ գորտերը վերսկսեցին իրենցը.

— Խա-խա-լը՜, խա-խա-լը՜...

Սիմոնը հասկացավ նրանց [illegible]: «Հիմա էլ խախալ են ուզո՞ւմ, անզգամները»,— գորտերի դեմ նեղացավ նա: Նեղացավ ու հասկանալով, որ գորտերը խախալն ուզում են, որ ցեխ անելու համար ավազ մաղեն, վեր կացավ, իջավ կտուրից ու մտավ մառան: Իրենք կաշվե փոկից գործած մի լավ խախալ ունեին, որով մայրը կալի ցորենը, ձավար ու կերակրի սերմերն էր մաղում-խախալում: Սիմոնը խախալը վերցրեց ու բարձրացավ կտուրը:

— Խա-խա-լը՜, խա-խա-լը՜...— ճչում էին գորտերը:

Սիմոնը խախալը նետեց ճահիճը:

— Է՜ս էլ ձեզ խախալ,— գոչեց նա:— Վերցրե՛ք, թողեք մի կուշտ քնեմ, է՜լի...

Բայց այլևս քնելու ժամանակ չկար: Լույսը բացվում էր: Արդեն արթնացել էր տան մեջ քնած նրա մայրը: Մայրը դուրս եկավ բակ, նայեց տեսավ, որ ոչ սենյակի համար գնած քարը կա, ոչ էլ մառանում կիրն ու խախալը:

— Մեր քարը, կիրը, մեր խախալն ո՞ւր է, Սիմոն,— հարցրեց նա որդուն:

— Տվել եմ գորտերին,— պատասխանեց Սիմոնը:

— Ո՞նց թե: Ինչի՞,— զարմացավ, բարկացավ մայրը:

— Ուզեցին, ես էլ տվի: Առաջ քար ուզեցին, հետո՝ կիր, հետո էլ՝ խախալը, որ ավազ մաղեն: Գորտերը տուն են շինում իրենց համար:

— Վա՜յ քո՜ տունը քանդվի, հա՜...— գոռաց, լաց եղավ մայրը:— Ա՛յ տարտակ, քա դու սկի խելքի պատառ չունե՞ս: Էս գիշեր էլ որ գորտերն ինձ ուզեն, տալո՞ւ ես: Ա՛յ չունենամ քեզ նման, հա՜...

— Բա ի՞նչ անե՜մ,— լացը գլուխը գցեց Սիմոնը:— Սաղ գիշեր չթողին, որ քնեմ: Քար, կիր, խախալ էին պահանջում:

Մայր ու որդի նստեցին ու ողբ-ողբ լաց եղան: Մայրը լաց էր լինում որդու անխելքության ցավից, որդին էլ այն բանից, որ այդ գիշեր նույնպես չի կարողանալու քնել:

## ԵՐԳԻՉ ԲԱՐՍԵՂԸ

Սատանի ձայն, պարկեշտ մարդ էր Բարսեղը: Նաև ամեն բանում անշնորհք: Ոչ տանն էր օգնել

գործ կարողանում անել, կնոջն օգնել, ո՞չ էլ գըրում: Թեկուզ վերցրու, գցիր գետը, ափսոս չի: Ձայնն էլ ագռավի կռոցի էր նման:

Մի օր կինը սրան գցում է գինու դատարկ կարասը, թե՝ մաքրի, լվա, որ մեջը ձավար պանիր ձմեռվա համար: Բարսեղը կնոջ ահից ու ալարկոտությունից սկսում է կարասում լաց լինել.

— Այ դադե՜յ, դադե՜յ: Վա՜յ ամանն, վա՜յ...

Նրա ձայնից կարասն այնպես է գնգում, գրընգում, որ Բարսեղը շշմում է: Նա զգում է, որ ինքը սրանչելի ձայն ունի, որի նմանը ողջ քաղաքում ոչ եղել է, ոչ էլ կա: Այս հայտնությունն անելուց հետո սկսում է երգել՝ ինքն իր ձայնով զմայլված, հիացած: Եւ, դատարկ կարասի մեջ ամեն ձայն իր տիրոջ հրաշք է թվում: Բարսեղը նորից է երգում, նորից հիանում է ինքն իր ձայնով: Վերջն իր ձայնի վրա սիրահարված՝ դուրս է գալիս կարասից ու փութում կնոջ մոտ:

— Ես շատ բարձր ձայն ունեմ, կնիկ: Սազանդար դառնամ, գնամ հենանքը հարսանիքներում ու քեֆերում երգեմ փող աշխատեմ:

— Հողե՜մ ագռավ գլուխդ, — բարկանում է կինը ու մի լավ ախտափում նրան: — Ավելի լավ է փոխնորդդ վերցնես, գնաս, բաղնիք լողանաս, վաղուց լողացած չկաս:

Ինքն իր ձայնով զմայլված Բարսեղը գնում է բաղնիք: Գնում է ու ոչ այնքան լողանում, որքան սկսում է երգել: Երգում է, ո՞նց է երգում: Բարսեղը բաղնիքում իր ձայնով ավելի է հիանում, քան հիացել էր կարասում:

— Չէ: Ես ծնվել եմ երգիչ լինելու համար, — հաստատ վճռում է նա ու նորից երգում, նորից հիանում սեփական ձայնով:

Այնուհետև ամեն տեղ, ամենքի մոտ տարածում, պարծենում է, թե ինքը լավ երգիչ է, թե աստված իրեն սոխակի ձայն է տվել:

Ժողովուրդ է: Մեկը մյուսից լսելով, քաղաքով մեկ տարածում են, թե Բարսեղը բարձր ձայն ունի, թե երբ նա սկսում է երգել, հավքերը գալիս, թառում են նրա ուսերին:

— Բարսեղի նման երգիչ ողջ աշխարհում չես գտնի, — ասում է մեկը:

— Բարսեղ մի ասա, Շիրազի սոխակ ասա, պրծի, — հաստատում է մեկ ուրիշը:

Եվ խոսք է, ձնագնդի պես գլորվելով, մեծանալով, ողջ քաղաքի բերանն է ընկնում ու գնում հասնում այդ քաղաքի թագավորի ականջին:

— Թագավորն ապրած կենա, — նրան շողոքորթել է ուզում պալատի կառավարիչը: — Մեր քաղաքում մի Բարսեղ անունով երգիչ կա, որի ձայնի նման բարձր ձայն ոչ լսած կաք, ոչ էլ կլսեք:

Այդ օրը օտար աշխարհից դեսպան է եկած լինում այս թագավորի մոտ: Դեսպանի ականջն ու սիրտը շոյելու համար, թագավորը վճռում է Բարսեղին հրավիրել, որ գա երգի, դեսպանին զմայլեցնի՝ նրա պատվին տալիք խնջույքին: Վճռում է ու հրամայում կանչել Բարսեղին: Բարսեղին բերում են խնջույքի: Նա խոր գլուխ է տալիս թագավորին ու երջանիկ ժպիտը երեսին՝ կանգնում նրա առջև:

— Բարսեղ երգիչը դո՞ւ ես, — հարցնում է թագավորը:

— Ես եմ, տեր թագավոր, — խոնարհ պատասխանում է Բարսեղը:

— Եվ, ուրեմն այս օտար աշխարհից եկած դեսպանին զարմացրու քո շնորհքով և ցույց տուր, թե ինչպիսի երգիչներ կան իմ քաղաքում:

— Աչքիս վրա, — նորից է գլուխ տալիս Բարսեղը: — Միայն, թագավորն ապրած կենա, ես առանց գործիքի չեմ երգում: Իմ գործիքը իմ կարասն է: Հրաման տուր, թող գնան իմ տնից իմ կարասը բերեն, մտնեմ մեջը երգեմ, որ դու էլ հիանաս, քո դեսպան հյուրն էլ:

Թագավորի ծառաները վազելով գնում են, Բարսեղի կարասը բերում: Կարասը բերում, կանգնեցնում են խնջույքի սրահի մեջտեղը: Բարսեղը մտնում է նրա մեջ ու ձեռքը ականջին դնելով՝ սկսում է երգել... Երգում է՝ ձենը գլուխը գցած ու իրեն թվում է, թե թագավորն ու դեսպանը հայիլ-մայիլ կտրած՝ զմայլվում են իր երգով, իսկ թագուհին հոգմուներից թաշկինակը հանած, արտասվում



է: Եվ կարասի մեջ ի՞նչ իմանա, որ իր զռոցը սարսափեցնում է բոլորին: Դեսպանն ականջները փակում է ու հեռանում՝ նայելով դժգոհված, իրեն կորցրած թագավորին: Բարսեղի ձայնն այնպես է զզվեցնում հավաքվածներին, որ շատերի

սիրտը խառնում է, շներն էլ փախչում են՝ ով ուր կարող է:

— Կտրեցե՛ք դրա կռռոցը,— կատաղած գոչում է Թագավորը:

Բարսեղին իսկույն հանում են կարասից: Սա հիացած նայում է Թագավորին ու գլուխ տալիս.

— Թագավորն ապրած կենա, տեսնում եմ, որ իմ ձայնից շատ ես հուզվել: Թույլ տուր մի անգամ էլ երգեմ...

Զզվանքից, բարկությունից ու խայտառակվելուց կաս-կարմրած Թագավորը հրամայում է Բարսեղին տանել հրապարակ, կապել սյունից ու ծեծել:

— Դրա գործիք-կարասը լցրեք ջրով, դրեք մոտը,— բղավում է նա:— Թող ամեն մարդ ձեռքը թաթախի կարասի ջրում ու ապտակի այդ խոզին, մինչև կարասի ջուրը վերջանա:

Բարսեղին բարշ տալով տանում են հրապարակ, կապում սյունից, կարասը դնում մոտն ու մեջը ջուր լցնում: Թագավորի հրամանի համաձայն, քաղաքացիները գալիս, ձեռքերը կոխում ջրի մեջ ու տո՛ւր քեզ, մի թաց ապտակ հասցնում Բարսեղին:

Նախ թրջում են մեր երգչի ականջները, ապա այտերը, բերանը, հետո վիզն ու գլուխը: Թաց ձեռքի ապտա՜կ, այն էլ քանի՞սը՝ ես հարյուր ասեմ, դու հազար իմացիր: Կարասն էլ լիքը ջուր: Ե՞րբ պիտի վերջանա: Մարդիկ խփում են Բարսեղի ուռած գլխին, իսկ սա շրթունքները կախ գցած՝ անվերջ գոչում է.

— Փա՜ռք քեզ, աստված:

Որքան խփում են, այնքան ավելի ջերմեռանդ է գոչում.

— Փա՜ռք քեզ, աստված...

Լուրը տանում են Թագավորին:

— Արքա Թագավոր, քո հրամանի համաձայն, մարդիկ ձեռքերը թաթախում են կարասի ջրում, խփում մեղապարտին, իսկ նա մի բերան փառք է տալիս աստծուն:

Թագավորը զարմանում է Բարսեղի աստվածասիրության վրա ու հրամայում նրան բերել իր մոտ: Բարսեղին բերում, մի կերպ կանգնեցնում են Թագավորի առջև:

— Ինչի՞ ես փառք տալիս աստծուն,— հարցնում է Թագավորը:— Երբ հենց ինքը՝ աստված է քեզ պատժել՝ քո խելքն առնելով:

— Ողորմած Թագավոր,— մի կերպ ուժ գտնելով՝ պատասխանում է Բարսեղը:— Դրա համար եմ աստծուն փառք տալիս, որ դու իմ փոքր գործիքը՝ իմ կարասը լցնել տվիր ջրով ու ինձ ծեծել ես տալիս, մինչև նրա ջուրը վերջանա: Բա եթե իմ մեծ գործիքը, բամբիռը ջրով լցնել տայիր, իմ հալն ի՞նչ կլիներ...

# «Իմ շունը գրագետ է»

ԼՈՒՍԻԿ ԲԱՂՆԱԿՅԱՆ

Մի քանի օր էր արդեն, որ բակի բոլոր երեխաները խոսում էին, վիճում: Ոմանք պնդում էին, որ Հովիկը ճիշտ է ասում. նրա շունը գրագետ է և կարողանում է բոլոր տառերը ճանաչել: Ոմանք թափ էին տալիս ձեռքերն ու ասում փչում է...

Իսկ Հովիկը պնդում էր.

— Գրազ կգամ, իմ շունը գրագետ է...

— Բե՛ր, բե՛ր մեր աչքով տեսնենք,— գոռում էին երեխաները:

— Կբերեմ, կիրակի օրը,— հպարտությամբ ասաց Հովիկը:

— Իսկ ինչու՞ ոչ այսօր կամ վաղը, ինչու՞ կիրակի,— գոռում էին անհամբերները:

— Ես այդպես եմ ցանկանում,— գլուխը տմբտմբացնելով՝ ասում էր Հովիկը:

— Թող այդպես լինի, միայն իմացիր, եթե սուտ եղավ, կաշիդ կքերթենք:

Կիրակի օրվան ամենից անհամբեր սպասում էին Վահանն ու Կարոն, քանի որ բակում միայն այդ երեքը շուն ունեին: Բայց Հովիկի շունն ու՛ր, նրանց երկուսինը՝ ու՛ր: Հովիկի շունը մի փոքրիկ քոթոթ էր, որը Վահանի կամ Կարոյի շներին տեսնելիս՝ իսկույն ծլկում էր կամ վախից կուչ գալիս տիրոջ ոտքերի արանքում:

Ահա և սպասված կիրակին:

Հավաքվել էին բակի երեխաների մեծ մասը ոչ միայն տղաները, այլև աղջիկներից մի քանիսը:

Երեխաները կանգնել էին պարսպից գետին թափված քարերի վրա, այնպես որ բոլորն էլ ուզում էին տեսնել Հովիկի շան «գրագիտությունը»:

Մեջտեղում կանգնել էին Հովիկն ու իր շունը:

Շունն անհանգստացած թռչում էր դեպի տերը, թաթերը դնում էր նրա փորին և հոտոտում: Հովիկը դժվարությամբ էր շանը հեռացնում իրենից և սպառնում, որ հանգիստ կանգնի:

Երեխաները անհանգիստ սպասում էին:

Հովիկը թղթի միջից հանեց շարժական տառերի տուփը:





— Հիմա կտեսնեք, որ իմ շունը գրագետ է,— ասաց նա, բաց արեց տառերի տուփն ու դիմեց երեխաներին։ Հիմա կարող եք ասել, ո՞ր տառն եք ուզում ջոկի հանի շունս։

Երեխաներից մի քանիսն իսկույն ոտքի կանգնեցին ու սկսեցին թվարկել՝ ա, չ, շ, թ...

— Սպասեցեք, միայն մի տառի հնչյունն ասացեք։

— Ա...

— Լավ, ավելի լավ է ա-ից սկսենք։

— Ոչ, ավելի՜ լավ է փ-ից սկսենք, ա-ն հեշտ է,—վրա բերեց Սամվելը, որը նոր էր առաջին դասարանից փոխադրվել երկրորդ դասարան, երևի նրա համար փ-ն ամենից դժվար հիշվող կամ գրվող տառն էր։



Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Բոլորը համաձայնեցին։

Հովիկը նախ լռեցրեց երեխաներին, հետո, իբր թե ի միջի այլոց, ձեռքը նախ տարավ վերնաշապիկի տակ, հետո վերցրեց փ տառը, նորից տարավ վերնաշապիկի տակ, հետո ցույց տվեց երեխաներին, խառնեց տառերն ու ասաց.

— Իմ սիրելի շնիկ, դու պետք է հիմա այս տառերի միջից ջոկես ու ինձ ցույց տաս փ տառը։

Նա շան դունչը մոտեցրեց տառերին։

Շունը մի քիչ դնչով տառերը շարժեց ու ատամներով բռնելով փ տառը՝ մեկնեց տիրոջը։

Երեխաներից ոմանք ուրախության բացականչություններ արին։ Մյուսները թերահավատությամբ պահանջեցին, որ մի ուրիշ տառ հանի։

Փորձը կրկնվեց ուղիղ տասն անգամ։

Ջոկած տառերը Հովիկը լցնում էր գրպանը և ամեն անգամ կրկնում.

— Դե՛ իմ սիրելի շնիկ, այժմ էլ հանիր...

Եվ շունը հանում էր, ոչ մի դեպքում չխառնելով տառերը։ Հանում էր այն տառը, ինչ պահանջում էր իր տերը...

Երեխաների կասկածամտությունը կամաց-կամաց անցավ, նրանք սկսեցին հավատալ։

— Բոբը գրագետ է,—կրկնեցին նրանք ու ցրվեցին։

Հովիկի ու նրա շան՝ Բոբի մոտից չէին հեռանում միայն Վահանն ու Կարոն։ Նրանց շատ էր հետաքրքրում, թե ինչպես է հաջողվել Հովիկին շանը գրաճանաչ դարձնել։

— Գուցե նրան օգնել է պա՞պը, չէ՞ որ նրա պապը գիտնական է,—փսփսում էր Կարոն Վահանի ականջի տակ։

— Բա ի՞նչ խոստանանք, որ Հովիկը մեզ էլ սովորեցնի։

Միևնույն էր, Հովիկը մնաց անդրդվելի և չըխոստացավ նրանց օգնել։

— Դե, վարժեցրել եմ, է՛լի...— ասաց նա ու հեռացավ։

Հենց նույն օրը տառաճանաչության ուսուցում սկսեցին տղաները իրենց շների հետ, բայց՝ ոչ մի արդյունք։

— Երևի նրա շունը բնական տաղանդ է ունեցել,— միաբերան հաստատեցին տղաները՝ նախանձով հիշելով Հովիկի շանը։

Ապա իրենց սաստը հերքելով՝ նորից գործի անցան, բայց՝ ոչ մի արդյունք։ Նրանց շներից և ոչ մեկը ոչ մի տառ ջոկել չկարողացավ։

Բակի երեխաներն ուրիշ աչքով սկսեցին նայել Հովիկին ու նրա շանը։ Դրանից Հովիկն ավելի մեծամտացավ։

Երեխաներից ոմանք ասում էին, որ աշխարհում միակ մարդն է Հովիկը, որին հաջողվել է շանը տառաճանաչություն սովորեցնել։

Գյուղի բոլոր ծայրերից գալիս էին, Բոբին տեսության։ Մի քանիսը նրան սկսեցին Բոբկա անվանել։ «Գրագետ շանը» տեսության եկող երեխաներն իրենց հետ երբեմն նվերներ էին բերում՝ մսի կտորներ, հաց և նման բաներ։

Երեխաներից մի քանիսը նույնիսկ սկսեցին պատկերացնել, թե ինչպես մոտ ժամանակներս կարող է Բոբը նստել պատշգամբում և գրքեր կարդալ...

* * *

Մի երեկո, աշնան մի ցուրտ երեկո, նորից Հովիկի շուրջն էին հավաքվել երեխաները։ Փչում էր աշնան սառը քամին, պոկում ծառերի տերևներն ու շփրտում երեխաների երեսներին...

Իսկ Բոբը հոտոտում էր տառերը և դժգոհ շարժում դունչը։

Հովիկը գոռում էր, զայրացած կրկնում տառի անունը, բայց իզուր, Բոբն այդ օրը ոչ մի տառ հանել չկարողացավ...

— Ցուրտ է, շունս մրսում է,— հուսահատված ասաց Հովիկը։

Երեխաները զարմացած իրար նայեցին։

— Ոչ թե ցուրտ է,— խոսեց ծեր դռնապան քեռի Հովհաննեսը, որը ցույց էր տալիս, թե հենց այնպես է հետևում խմբված տղաներին։

— Հապա՞, քեռի Հովհաննես,— երեխաներից մի քանիսն իսկույն շրջապատեցին նրան։

— Թող ինքն ասի...

Հովիկը լուռ էր...

— Դո՛ւք ասեք, քեռի՛, դո՛ւք ասեք,— խնդրեցին երեխաները։

Քեռի Հովհաննեսը բաց արեց թղթի մեջ փաթաթված մի մուգ բան, հոտոտեց և դեմքը թթվեցնելով վայր գցեց։

Երեխաները միսյանց ոտքերը տրորելով կռացան, նայեցին ու ոչինչ գլխի չընկնելով՝ բարձրացան։ Զորացած, հին երշիկի կտոր էր...

— Երբ վազում էր այստեղ, վերնաշապիկի տակից ընկավ,— ասաց քեռի Հովհաննեսը՝ ցույց տալով Հովիկին։

Բոլորը շրջվեցին Հովիկի կողմը։ Հովիկը գլուխը կախ գցած կանգնել էր, իսկ Բոբը քաշում էր նրա վարտիքի փեշերից։

# ԵՍ ԿԳՏՆԵՄ ՆՐԱՆՑ



Գրում է Պիասեթը

Կիրակի էր։ Մայրիկիս հետ վերադառնում էինք եղբորս տանից։ Աջափնյակի 1002 տան մոտակա կանգառում շատ մարդիկ էին հավաքվել։ Դրսում ցուրտ էր։ Բոլորս մրսում էինք, ու թերևս դրանից էր, որ ավելի անհամբեր էինք սպասում 11 համար ավտոբուսին։ Վերջապես երևաց մեքենան և բոլորն ուրախացած սկսեցին կենտրոնանալ կանգառի մոտ։

— Պիասեթ, առջևի դռնից կընստես,— նախապես զգուշացրեց մայրիկս։

Իհարկե ես առջևի դռնից չնստեցի, որովհետև այնտեղ ավելի փոքրեր, տատիկներ ու պապիկներ կային։

«Այս ի՞նչ է, կարծես շուտ է եկել, դեռ 10 րոպե էլ պետք է կանգնի»,— վարորդի խոսքերի վրա մտածում էի ես, երբ աղմուկով ավտոբուս բարձրացան երկու աղջիկ և մի տղա։ Երևում էր, քույրեր ու եղբայր էին։ Քույրերը ավելի մեծ էին, քան եղբայրը։ Տղան կլիներ ութ տարեկան։

Մեծ քույրը մի ազատ տեղ գտավ և անհանգստացնելով ուրիշներին, շտապեց տեղավորվել։

— Կարծես փոքր է կամ էլ ծեր,— դժգոհ նայեցի ես։

Վերջապես մեքենան շարժվեց ու տոմսավաճառն սկսեց իր ամենօրյա, գուցե և անտեղի զգուշացումները.

— Տոմսե՛ր վերցրեք, առջևից բարձրացողները թող փոխանցեն։

«Դե, բոլորն էլ վերցնում են, էլի, էլ ինչո՞ւ ես այդպես գոռգոռում»,— մտածում էի ես։ Բայց հենց այդ րոպեին լսեցի քիչ առաջ ավտոբուս բարձրացած երեխաների խոսակցությունը.

— Անահիտ, փողը տուր, որ տոմս վերցնեմ,— մեծ քրոջն էր դիմում փոքրը։

— Գագիկի մոտ է։

— Դու էլ անընդհատ մոռանում ես, Գայանե, չէ՞ որ մայրիկը փողը քեզ տվեց, գրպանումդ է,— բարկացավ փոքր եղբայրը։

Բայց Գայանեն սաստող հայացքով նայեց Գագիկին և կիսաշշուկ ասաց.



ՆԿ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

— Սուս, կլսեն, դիտմամբ եմ անում, հո տոմս չե՞նք վերցնելու։

Ես շատ բարկացա և անդնուտեղը որոշեցի տեղյակ պահել խմբագրությանը, որ բոլորը կարդան նրանց մասին։ Հաջորդ կանգառում նրանք հրմշտելով մարդկանց՝ մի կերպ իջան մեքենայից։ Ես հետևեցի նրանց, որպեսզի իմանամ ո՞ր դպրոցում են սովորում։ Բայց հենց այդ ժամանակ մի տատիկ խնդրեց օգնել իրեն՝ իջեցնել ավտոբուսից և անցկացնել դիմացի մայթը. գետինը սառած էր, կարող էր ընկնել։ Ու մինչև ես տատիկին անցկացրեցի դիմացի մայթը, տղան ու աղջիկները անհետացան։ Ես չկարողացա իմանալ նրանց հասցեն։ Բայց նրանց միշտ չի հաջողվի փախչել ինձանից կամ իմ ընկերներից։ Մենք դեռ կգտնենք այդ անկարգներին։



digitised by A.R.A.R.@



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ «Պառնիկ ախպերը»**

# ԳԻՐՔ ՀՆԱՐԱՄՏՈՒԹՅԱՆ

Մի անգամ, երբ հայրիկն ու մայրիկը տանը չէին, Սուսանը Գայանեին կանչեց իր մոտ, որ մենակ չմնա։

Սկզբում, հաջորդ օրվա դասերի մի մասը պատրաստեցին, հետո հոգնեցին և որոշեցին մի քիչ էլ ալբոմներ նայել։ Սակայն դրանից էլ ձանձրացան և սկսեցին շատախոսել ու ծիծաղել։ Սակայն որքա՞ն կարելի էր շատախոսել ու ծիծաղել։ Նրանք արդեն իրար ասելու բան էլ չունեին և սկսել էին տխրել։ Ի՞նչ անեին, իրենք էլ չգիտեին։ Բարեբախտաբար հենց այդ ժամանակ նրանց մոտ եկավ հարևանի աղջիկը՝ Ռուզանը։

— Հայրիկս ինձ համար մի այնպիսի գիրք է գնել, որի նմանը ոչ ոք չունի, — ուրախ-ուրախ ասաց նա և հանեց մեջքի հետևում թաքցրած գիրքը։

Սակայն որքան էլ Գայանեն ու Սուսանն ուզեցին, որ իրենք թերթեն, չտվեց։

Ուզում եք, ուշադիր լսեք կարդամ,— ասաց նա և առանց պատասխանի սպասելու, բաց արեց գիրքը, ընտրեց մի հեշտ խնդիր-հանելուկ ու սկսեց կարդալ. — «Մլավան կատուն երազում տեսնում է, որ իրեն շրջապատել են տասներեք մկներ։ Տասներկուսը մոխրագույն են, իսկ մեկը՝ սպիտակ։ Եվ կատուն լսում է, որ մի ծանոթ ձայն ասում է. «Մլավան, դու պետք է ուտես յուրաքանչյուր տասներեքերորդ մուկը, հաշվելով նրանց շրջագծով միշտ միևնույն ուղղությամբ այնպես, որ սպիտակ մուկը վերջում ուտես»։ — Դե գտեք, ո՞ր մեկից սկսի, որպեսզի խնդիրը ճիշտ լուծվի, ասաց Ռուզանը։

Գայանեն ու Սուսանն անմիջապես աշխուժացան, թուղթ ու մատիտ վերցրին և սկսեցին լուծել։ Եվ դեռ չէին վերջացրել դրա լուծումը, որ Ռուզանն ասաց.

— Ուզում եք, մեկ ուրիշն էլ կարդամ, ավելի հեշտը, կամ թե այնքան դժվարը, որ միայն հայրիկների օգնությամբ կարողանաք լուծել։ Լավ, առայժմ կարդամ ամենահեշտերը։

Եվ նա սկսեց կարդալ հաջորդ խնդիր-հանելուկը. — «Փաթեթում կա 9 կգ ծավար, փոքրիկ նժարավոր կշեռքի օգնությամբ, 50 գ և 200 գ կշռաքարերով, ամբողջ ծավարը բաժանել 2 փաթեթի, մեկում՝ 2 կգ, մյուսում՝ 7 կգ։ Ընդ որում թույլատրվում է կատարել միայն 3 կշռում»։ Լուծելուց հետո պատասխանները կստուգենք, գրքի վերջում տրըված են բոլոր խնդիրների պատասխանները։

Երկու ընկերուհիները այնպես տարվեցին առաջադրված խնդիրներով, որ մոռացան և՛ ձանձրույթ, և՛ ժամ ու ժամանակ, կարծես մրցման էին դուրս եկել, թե ով ավելի շուտ կլուծի։ Նրանք շտապում էին, որ տեսնեն, թե գրքում ուրիշ ինչ խնդիրներ կան։ Սակայն Ռուզանը


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Դ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

**Пионер**" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—41—83, 2—39—06։*

*ՎՖ 10760։ Պատվեր՝ 2548։ Տպաքանակ՝ 13 300։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 1 XII. 1965 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։* Գինը՝ 20 կ.

Հովհ. Թումանյան.

# Գառնիկ ախպեր









Նկարիչ՝ Սարգիս Մուրադյան

Երկու որբեր,
Քուր ու ախպեր,
Կարա՞ծ գնում են հեռու.
Արևը վառ,
Ճամփեն երկար,
Ոչ աղբյուր կա, ոչ ստու:

Քույրը մեծ էր, ոնց որ լիներ
Կը համբերեր արևին,
Բայց ախպերը փոքրիկ էր դեռ,
Չէր դիմանում ծարավին:

Գընում են, գընում, տեսնում են ճամփին
Կովի ոտնատեղ՝ մեջը լիքը ջուր:
«Քուրի՛կ ջան, քուրիկ, ես շատ եմ ծարավ,
Ի՞նչ կըլի թողնես խմեմ մի պուճուր»:

— Չէ՛, ախպեր ջան, չէ՛, դու կով կդառնաս,
Կովի կճղակի տեղից մի՛ խմի.
Մի քիչ էլ կացի... քիչ էլ որ կենաս,
Առաջներս պաղ աղբյուր կա հիմի:

Երկու որբեր,
Քուր ու ախպեր,
Գընո՞ւմ, գընում են հեռու,
Արևը վառ,
Ճամփեն երկար,
Ոչ աղբյուր կա, ոչ ստու:

Գընում են, գընո՞ւմ, տեսնում են ճամփին
Ձիու ոտնատեղ մեջը՝ լիքը ջուր:
«Քուրիկ ջան, քուրիկ, ես շատ եմ ծարավ,
Ի՞նչ կըլի թողնես խմեմ մի պուճուր»:

— Չէ՛, ախպեր ջան, չէ՛, դու ձի կդառնաս,
Ձիու սմբակի տեղից մի՛ խմի,





Մի քիչ էլ կացի, քիչ էլ որ կենաս՝
Մոտիկ մի զուլալ աղբյուր կա հիմի։

Երկու որբեր,
Քույր ու ախպեր,
Գընո՜ւմ, գընում են հեռու,
Արևը վառ,
Ճամփեն երկար,
Ոչ աղբյուր կա, ոչ առու։

Գընում են, գընում, տեսնում են ճամփին
Գառան ոտնատեղ՝ մեջը լիքը ջուր։
Փոքրիկ ախպերը էլ չի համբերում,
Քըրոջից թաքուն խըմում է պուճուր։

Քույրը մին էլ ետ է նայում,
Որ մի գառը մղկտալի
Իր ետևից տխուր մայում
Ու մայելով վազ է տալի։

Խեղճ Մանուշը վայ է տալիս,
Վայ է տալիս, լալի՜ս, լալի՜ս.
Բայց էլ ի՞նչ աներ,
Բայց էլ ո՞նց աներ...

Երկու որբեր,
Քույր ու ախպեր,
Գառն ու աղջիկ մոլորված,
Հեռու երկրում,
Տըխուր-տըրտում
Գընո՜ւմ, գընում են կորած։

Սոված ու ծարավ գընում են, գընում.
Գընում են, գընո՜ւմ, չըգիտեն, թե ուր,
Վերջապես մի հով անտառ են մըտնում,
Անտառի միջին՝ մի զանգակ աղբյուր։
Կուշտ-կուշտ խըմում են էն սառը ջրից,

Հեռու Մանուշի ծառն է բարձրանում,
Գառնիկ ախպերն էլ ծառերի տակին
Մուշ-մուշ արածում, որս է անում:
Իրիկվան պահին խրխինջ ու քրրքիջ…
Լցվում է հանկարծ անտառն աղմուկով.
Մոտիկ են գալի ձայները քիչ-քիչ…
Մոտիկ են գալի ծիծաղով, երգով…
Եվ ահա ոսկի սանձերից բռնած՝
Բերում են ջրբեն ձիանքն արքայի:
Ամենի ձիանքն աղբյուրից խրրտնած՝
Ծառս-ծառս են կանգնում ու մոտ չեն գալի:
Մրտիկ են տալի ծառայքը մեկ էլ,
Որ սիրուն մի ցուք ջրի մեջն ընկել,
Ու ջուրը քանի ալիք է տալի,
Նա էլ ջրի հետ գլնում է գալի:
Նայում են վերև: Ի՞նչ տեսնեն, աստվա՜ծ,
Մի հուր-հրեղեն, մի շարմաղ աղջիկ,
Ծառի ճյուղերին նազելի նստած՝
Նայում է ներքև լռիկ ու մնջիկ.
Մի սիրո՜ւն աղջիկ, արմանք ու զարմանք:
Զարմանք է պատում խեղճ ծառներին.
Տեր աստված, արդյոք ի՞նչ հրաշք է սա,
Վայրի անտառում իջած էս ծառին:

— Ո՞վ ես, չքնաղ, տեսի՞լք ես դու,
Թե՞ հողեղեն արարած.
Թե տեսիլք ես՝ կաց մի քիչ էլ,
Թե աղջիկ ես՝ արի ցած:
Ցած եկ տեսնենք՝ ի՞նչպես եղավ,
Որ ծագեցիր դու մեզ մոտ,
Ի՞նչ ցավ է քեզ արդյոք բերել
Մեր աշխարհքը անծանոթ:

— Մեզ որբության ցավն է բերել
Ձեր աշխարհքը անծանոթ:—

Ձայն է տալիս ծառի միջից
Մեր Մանուշը ամաչկոտ։—
Մենք տուն չունենք, ոչ ապավեն
Էս լայնարձակ աշխարհքում,
Մութն էլ հիմի շուտով կընկնի,
Վախենում ենք անտառում։

Ու ծառաները գառն ու աղջկան
Առնում են բերում պալատն արքայի։
«Ո՞վ ես դու, սիրուն,— հարցնում է արքան,—
Անտառն գառան հետ ի՞նչ ես ման գալի»։

Կանգնում է աղջիկն էստեղ նորից նոր,
Պատմում է, ինչ որ պատմեցի ես ձեզ.
Թե՝ ապրած կենաս, ահեղ թագավոր,
Մեր բանը, հապա՜, էսպես ու էսպես...

Թագավորն երբ որ լսում է մին-մին՝
Ե՛վ շատ ցավո՛ւմ է, և՛ շատ հավանում.
Առնում է նրան իրեն թագուհին,
Յոթն օր, յոթ գիշեր հարսանիք անում։

Ու փառքի միջում, շքեղ դահլիճում,
Լիքն ու երջանիկ ապրում է Մանուշ.
Գառնիկ ախպերն էլ նախ պարտեզներում
Արոտ է անում ու խաղում անուշ։

Պալատումը կար նախանձոտ ու չար
Մի պառավ կնիկ, հնուց աղախին.
Նախանձում է սա, թե ո՞նց պիտի գա
Մի որբ՝ թագուհի դառնա մեր գլխին։

Մի օր էլ գալի, գլուխ է տալի,
Առաջը կանգնում, կեղծավոր գովում.
«Արի քեզ տանեմ, սիրուն թագուհի,
Ձրփ-փր՛փ լողացնեմ շարմաղ էն ծովում»։

Խաբում է, տանում, գցում ծովի մեջ.
Շորերը հանում, ետ բերում քաղաք,

Հագցրնում իր սև, գարձյոր աղջըկան,
Պալատ ուղարկում թագուհու տեղակ:

Երեսը ծածկած թանձր շղարշով
Պալատ է մտնում էն սուտ թագուհին,
Ու թագավորն էլ կասկած չի տանում,
Թե ո՛վ է եկել բազմել իր գահին:

Բայց ինչ անում են, ինչ որ չեն անում,
Չեն կարում էլ տուն բերեն Գառնիկին.
Մայում՝ էս ափից էն ափն է վազում,
Մայում՝ էն ափից էս գալի կրկին:

Ի՞նչ անենք սրան, ո՞նց անենք սրան,
Պառավն ու աղջիկ շատ միտք են անում,
Վերջը գալիս է գարձյոր թագուհին
Անկողին մտնում, հիվանդ ձևանում:

Էլ՛ թանկ ուտելիք, էլ՛ ազնիվ մրգեր
Բերում են փռում, խնդրում, աղերսում.
Մտիկ չի տալի ոչ մեկի վրա.
Վերջը Գառնիկի մսիցն է ուզում...

«Բայց չէ՞ որ, Մանուշ, քո եղբայրն է նա,
Ո՞նց ես նրա միսն ուզում դու հիմա...»

— Ի՞նչ անեմ, ինձնից նա ազիզ հո չի՞.
Ես որ մեռնում եմ, թող նա էլ կորչի...
Ասում է, ճչում. «Վա՜յ, մեռա՜, աման...»
Ու թագավորը տալիս է հրաման.

«Կրակ վառեցեք,
Դանակ սրեցեք,
Բերեք մորթեցեք
Ախպեր Գառնիկին,
Որ առողջ լինի
Իր քույր ափկին»:

Թագավորն էսպես պատվեր է տալի,
Պատվեր է տալի ու դուրս է գալի,
Գտնում է ծովափ սաստիկ սրտնեղած,
Թե ո՛րքան Մանուշն անգութ է եղած...

Մայում է, լալիս Գառնիկ-Ախպերը,
Լացացնում է ժեռ ծովի ափերը,
Մի ափից բռնած մյուս ափն է թռչում,
Մարդկային լեզվով քրոջը կանչում.

— Քուրիկ ջան, քուրիկ,
Կրակ են վառում,
Կրակ են վառում,
Դանակ են սրում:
Քուրիկ ջան, քուրիկ,
Լսիր անդունդից,
Օգնության հասի,
Սպանում են ինձ:

Լսում է արքան՝ տեղը քար կտրած,
Եվ ալիքների միջից հանկարծ
Շատ ծանոթ մի ձայն հեռո՜ւ, խո՜ւլ ու խոր
Կանչում է քնքուշ, կանչում է անզոր.

«Ախպեր ջան, ախպեր,
Անհեր ու անմեր,
Անքուն ու անտեր,
Իմ Գառնիկ-Ախպեր,
Դժար է տեղս,
Ձենըս չեն լսում,
Ձենըս չեն լսում,
Ձեռըս չի հասնում:
Ա՜խ, չար պառավը
Սև արավ օրըս,
Այժմ էլ կըսպանի
Գառնիկ-Ախպորըս»:

Լըսում է արքան, պալատն է հանում,
Պտտում է բոլոր թագուհու դեմքի,
Պտտում է, տեսնում... բայց ի՜նչ է տեսնում,
Ո՞վ է իր գահին եղել թագուհի...

— Եկե՜ք, ձկնորսնե՜ր, ուռկան գցեցե՜ք,
Հանեցեք ծովից մեր լավ Մանուշին.
Եկե՜ք, գահիճնե՜ր, ծովը գցեցե՜ք
Կախարդ պառավին ու էս հրեշին։

Էսպես բարկացած գոռում է արքան,
Ժողովուրդն ամեն թընդում է ցավից,
Գալիս է կանգնում, գցում է ուռկան,
Անմեղ Մանուշին հանում է ծովից։

Հանում է ծովից, գահին բարձրացնում,—
Կրկին թագուհի ու տիկնանց տիկին.
Գառնիկ-Ախպերն էլ անչափ խնդումից
Պտտում է իրեն ոչխարի մորթին։

Դուրս գալի, կանգնում սիրուն տղամարդ,
Ճակատը պայծառ, աչքերը վառ-վառ,
Ոչխարի տըկար մայունի տեղակ
Մարդկային լեզվով ազատ ու ճարտար։

Իսկ չար պառավին, իրեն աղջըկան,
Որ խաբել էին աշխարհ բոլանդակ,
Վըզներից կապում ջաղացի քարեր,
Գցում են ծովի անդունդը անտակ։

Երկու որբեր,
Քույր ու ախպեր,
Առած պատիվ, գահ ու թագ.
Աշխարհքն էլի
Խաղա՜ղ ու լի՜,
Չարը թաղված ծովի տակ։





